# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## № 3 ● 1984

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի առաջին էջը՝
ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՄԱՅՐԵՐԸ

Ամեն-ամեն օր
Մայրերը դառնում են երգող թռչուններ՝
Օրորոցների մոտ:

Ամեն-ամեն օր
Մայրերը բերում են կարմիր խնձորներ
Հեքիաթի հեռու երկինքներից...

Եվ երբ ծերանում են,
Մայրերը հոգնած՝ գնում են դաշտ,
Քնում են դաշտում, տերևների տակ...
Հետո դառնում են օշինդր ու դաղձ
Եվ քամիների մեջ բուրում են տաք...

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





digitised by A.R.A.R.@



# ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԻ ՀԵՏ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

1954 թվականի աշնանը երկու ամսից ավելի նա պառկեց հիվանդանոցում: Պարույրի տված հավատարմագրով, փոստի բաժանմունքից ես ստանում էի նրա ցպահանջ նամակները և շաբաթը մեկ-երկու անգամ տանում հանձնում նրան: Նամակներից բացի, ես տանում էի այն գրքերը, որ հարկավոր էին Պարույրին թարգմանելու կամ պարզապես կարդալու համար: Նա հիվանդանոցում հիվանդի դերում չէր մնում: Կարդում էր, թարգմանում, չնայած մի որոշ ժամանակ դա նրան արգելել էին: Երևի, տեղն է ասելու, որ նա օժտված էր արտակարգ աշխատասիրությամբ:

(Սկիզբը՝ №№ 1—2)

Դեռ հիվանդանոց գնալուց առաջ պատրաստում էր Ադամ Միցկևիչի «Ընտիր երկերը» հայերեն: Դրան նախորդել էր Քրիստո Բոտևի «Երկերի» թարգմանությունը:

Հիվանդանոց ընկնելուց մի երեք օր առաջ նա ինձ կարդաց Միցկևիչի մի հրաշալի բալլադի՝ «Բուդրիսն ու իր որդիները» հրաշալի թարգմանությունը:

Հիվանդանոցում նա թարգմանեց լեհ մեծ բանաստեղծի «Կոնրադ Վալլենրոդ» մեծածավալ պոեմը: Թարգմանելուց առաջ, լեհ դասընկերների օգնությամբ ռուսերեն թարգմանությունները տող առ տող համեմատեց բնագրի հետ և նշեց բնագրային բոլոր շեղումները: Վստահորեն կարելի է ասել, որ Միցկևիչի ստեղծագործությունները ոչ թե միջնորդ լեզվից են թարգմանված հայերեն, այլ բնագրից՝ «ըստ պատկերի և ըստ կերպարանաց» Միցկևիչի...

Պարույրն անողոք էր ապաշնորհ ու կպչուն մարդկանց հանդեպ, բայց և նույնքան էլ ուշադիր և հոգատար էր համեստ մարդկանց նկատմամբ: Հիշում եմ նրա բազմաթիվ ելույթները պոեզիայի սեմինարում, որը ղեկավարում էր բանաստեղծ Դոլմատովսկին: Որպես օրենք, Պարույրը միշտ կարդում էր քննարկման ներկայացված բանաստեղծությունների տողացի թարգմանությունները, որոնք նախօրոք մեքենագրվում և բաժանվում էին սեմինարի մասնակիցներին: Սեմինարի ղեկավարը և սեմինարի բոլոր մասնակիցները հարգանքով և պատկառանքով էին լսում Պարույրին:

Հիշում եմ, մեր սեմինարներից մեկում նա քննադատեց «Մոսկվա» ամսագրի վերջին համարներից մեկում լույս տեսած «Կամավորներ» պոեմը, որի հեղինակն էր... մեր սեմինարի ղեկավար Դոլմատովսկին:

Հենց այդ անկեղծության և անմիջականության համար էլ նրան սիրում էին բոլորը, նույնիսկ նրանք, որոնց քննադատում էր:

Իսկ ինչպե՞ս էր վերաբերվում նա իրեն քննադատողներին: Պատմեմ մի դեպք, որը շատ բնորոշ էր Պարույրին: Որքան հիշում եմ, 1955 թվականի նոյեմբերն էր: Ուսման վերջին տարին: Մեր սեմինարում քննարկման էին դրված նրա բանաստեղծությունները: Չմոռանամ ասել, որ քննարկման էին դրվում միայն անտիպ գործերը: Պարույրը ներկայացրել էր բանաստեղծությունների մի մեծ փունջ՝ «Հերոսները», «Հայաստան», «Մոսկվացիներ», «Ութնյակներ» և այլն: Այդ բանաստեղծություններից մի քանիսը թարգմանվեցին և տպագրվեցին «Նովի միր» ամսագրում: Ինչպես և պետք էր սպասել, եղան




13180-ԱՄ

digitised by A.R.A.R.@

հիացական կարծիքներ: Նյութներ ունեցան բանաստեղծներ Եգոր Իսաևը, Ռոբերտ Ռոժդեստվենսկին, բուրյաթ Նիկոլայ Դամդինովը...

— Իսկ այդ բանաստեղծությունները ինչպե՞ս են հնչում հայերեն,— հարցրեց Դոլմատովսկին:

Հայերեն իմացողները երկուսս էինք՝ Հրանտ Ղազարյանը և ես:

Ըստ արժանվույն գնահատելով ներկայացված լավագույն բանաստեղծությունները, ես այն կարծիքն արտահայտեցի, որ հայկական ժողովրդական առածների և ասացվածքների հիման վրա գրված «Ութնյակները» երբեմն բառախաղերի տպավորություն են թողնում...

Համարյա նույն կարծիքն հայտնեց Հրանտը:

Սեմինարից անմիջապես հետո Պարույրն ինձ ու Հրանտին հրավիրեց «Արագվա» կաֆեն, որը հենց մեր ինստիտուտի կողքին էր գտնվում: Ճաշելուց հետո մի-մի բաժակ սուրճ խմեցինք ու դուրս եկանք: Լուռ քայլում էինք, բայց համոզված եմ, երեքս էլ նույնն էինք մտածում: Նստեցինք Տվերսկոյ բուլվարում, մի խաղաղ նստարանի վրա:

— Դե հիմա ասեք տեսնեմ ինչի՞ց եք դժգոհ,— հարցրեց Պարույրը:

— Դե էնտեղ ասացինք էլի,— խորամանկեց Հրանտը:

— Էնտեղ դուք ռուսերեն էիք խոսում,— Պարույրը հատկապես ընդգծեց «ռուսերեն» բառը,— գուցե չուզեցիք (իմա՝ չկարողացաք) լրիվ ասել ձեր ասելիքը:

Ստիպված էինք հայերեն ասել մեր ասելիքը: Կարդում էինք ամեն մի ութնյակ և տեղնուտեղը վերլուծում:

Ինչ էլ որ անես—հարյուրը՝ հարյուր,
Հազարն էլ հազար է մնում:
Հա զույգ փոշտա—մրսելը՝ մրսել,
Հազալն էլ հազալ է մնում:
Ինչքան սիրտդ տա՝ սաղարթից խոսիր
Ու վարդից խոսիր մաղիսյան,—
Ախար ինչ օգուտ— աշունը՝ աշուն,
Խազալն էլ խազալ է մնում:

— Էս ի՞նչ ես գրել՝ վերցրել ես հազարհազալ-խազալ բառերը և բանաստեղծություն սարքել...— ասաց Հրանտը:

— Իսկ ինչո՞ւ չի կարելի սա շարունակել այսպես,— ես հանպատրաստից շարունակեցի.

Ինչքան էլ բողկը թանկանա,
Գազարը գազար է մնում:
Հերթ լինի խանութում թե չէ՝
Բազարը բազար է մնում:
Կաֆեում կերանք-խմեցինք,
Սեմինարն ինչ ասես արժեր,
Ուտիանը թող հա տրաքի,
Նազարը Նազար է մնում...

Երեքս էլ ծիծաղեցինք: Օղի՞ն էր մեղավոր, թե ինչ, լեզուներս բացվել էր: Լսելը մեծ կուլտուրա է: Պարույրը շատ լավ լսել գիտեր: Նա, ինչպես ասում են, մեզնից մզեց նաև մեր չասած խոսքերը: Եվ այդ ամբողջ ժամանակ դժգոհության որևէ երանգ չնկատեցի նրա դեմքին: Նույնիսկ տոն էր տալիս, խրախուսում:

✳✳✳

... Ընդմիջում էր: Երկար ու նեղ միջանցքի վերջում կանգնած ծխում էինք: Մեկ էլ միջանցքի մյուս ծայրից լսվեց կանացի մի կենսախինդ, զնգուն քրքիջ:

— Մետաքսեն է,— ասաց Պարույրը,— ո՞վ կասի, որ ծնողի երես չի տեսել, մեծացել է մանկատներում... Առաջին տարում չհաջողվեց այստեղ ընդունվել, չընկճվեց, խոհարարուհի դարձավ: Մեկ ուրիշը կմտածեր՝ ո՞նց թե, ես՝ Ապոլոնի ընտրյալս, խոհարարուհի՞.... Մանավանդ, որ Երևանում ավարտել էր ինստիտուտը: Իսկ նա, խնդրեմ, որոշեց և ընդունվեց:

Դասախոսություններից հետո, Հրանտ Ղազարյանի հետ պատրաստվում էինք մեկնել Պերեդելկինո՝ մեր հանրակացարանը: Մեկ էլ երևաց Պարույրը:

— Գնանք իմ «պալատը»: Համ կտեսնեք, համ էլ մի քիչ կխոսենք:

Ուրախությամբ համաձայնեցինք: Իսկ «պալատը» հեռու չէր, գտնվում էր Հրեից սինագոգի մոտ: Մտանք «Արմենտորգ», մի քիչ ուտելիք վերցրինք: Դե, ուսանողներ էինք, շատ բան վերցնել չէինք կարող: Հին խոսք է՝ ուսանողը երկու բան չունի՝ մեկ փող, մեկ էլ ժամանակ...

Ահա և Պարույրի «պալատը». երեք հոգով չկարողացանք կանգնել կողք-կողքի: Երեք քառակուսի մետր չկար: «Պալատի» կեսը զբաղեցրել էր մի խարխուլ մահճակալ, որի կողքին դրված էր նույնքան խարխուլ մի գրասեղան ու մի աթոռ: Սա էր պալատի ամբողջ կահավորանքը:

Հրանտն ու ես նստեցինք մահճակալին, Պարույրը՝ աթոռին: Հայտնվեց միջին տարիքի մի կին, տանտիրուհին էր, որը մեզ հյուրասիրեց թեյով: Մեր համեստ ընթրիքից հետո, Պարույրն ասաց.

— Ուզո՞ւմ եք, ես ձեզ համար մի վեպ կարդամ...

— Ի՞նչ վեպ:



digitised by A.R.A.R.@

— Ես եմ գրում, ճիշտ է՝ չեմ վերջացրել, բայց կուզեի կարդալ, տեսնեմ ինչ կասեք:

Պարույրը՝ վիպասա՜ն: Մեզ թվաց, թե կատակում է:

— Ոչ մի կատակ,— լռջացավ այն մանկան նման, որն իր «մեղքը» խոստովանում է, բայց չեն հավատում, — աճա՛ խնդրեմ:

Եվ բերեց, որքան հիշում եմ, ծոցատետրերի մի կույտ ու դրեց սեղանին: Մարգարտաշար, գեղեցիկ, ինչպես միայն Պարույրն էր գրում: Առաջին տետրի վրա գրված էր վեպի վերնագիրը՝ «Ա մ ա ն ա մ ե ջ»:

— Տարօրինակ վերնագիր ես դրել,— ասացի ես:

— Տեսնենք ի՞նչ ես լցրել այդ ամանի մեջ,— սրամտեց Հրանտը:

— Գիտե՞ք որտեղից եմ վերցրել այդ վերնագիրը... Մեր գյուղի անունն է՝ հայերեն, իսկ թուրքերեն՝ Չանախչի... Ես պարզապես թարգմանել եմ: Մեր գյուղը իսկապես էլ ոնց որ ամանի մեջ լինի... Չորս կողմից սարեր են ու նրանց մեջտեղը՝ փոս:

Տետրի վրա, որպես վեպի բնաբան, գրված էր Թումանյանի երկտողը՝ «Հառաչանք» պոեմից.

Ո՞վ է մեղավոր... Միտք եմ անում, միտք
Ու չեմ հասկանում ո՞վ է մեղավոր:

Սկսեց կարդալ: Վեպը մեզ կլանեց հենց սկզբից: Կարդում էր ու մեջընդմեջ հարցնում՝ չե՞ք հոգնել, շարունակե՞մ... Գյուղն էր իր նիստ ու կացով, իր լացով ու ծիծաղով: Նախատիպերը վերցրել էր հենց իրենց գյուղից, որոնց հետ շփվել էր, ուսումնասիրել մինչև ուղնուծուծը: Շատ հետաքրքիր կերպարներ էր ստեղծել: Ամբողջ ձեռագիրը համեմված էր հումորով, որը տեղ-տեղ խտանալով, սպանիչ երանգներ էր ընդունում, քնարական զեղումներով, լեռնային բնության հրաշալի նկարագրություններով...

— Շատ լավ էր, կեցցե՛ս, այսօրվա մեր գյուղն է, որ կա... Այդ արդեն «Անհաշտ մրտերմություն» չէ,— ասացի ես:

— «Անհաշտ մտերմությունը» արհեստական բեղմնավորումից է ծնվել,— սրամտեց Պարույրը:

— Երևում է՝ լավ գիտես ձեր գյուղը:

— Ինձ համար մեր ժողովրդի պատմությունը սկսվում է մեր գյուղից... Պետք է խորքերը մտնել, տակի շերտերը բարձրացնել: Հենց դա էլ ինքնաճանաչում է կոչվում: «Ծանիր զքեզ»... Մեսրոպի գրած առաջին բառերն են դրանք: Իսկ դու գիտե՞ս որտեղից է գալիս դա. հին հույները, երբ կառուցեցին Ապոլոնի տաճարը, նրա ճակատին փորագրեցին այդ նույն բառերը՝ «Ծանիր զքեզ»... Այսպես է, ջա՛ն, մենք պետք է մեզ ճանաչենք:

***

Խոսք ընկավ ֆրանսիական էնցիկլոպեդիստների մասին՝ Վոլտեր, Ռուսո, Դիդրո...

— Ի՞նչ գլուխներ են եղել... Հիմա էսպիսի մարդիկ չկան:

— Ինչո՞ւ չէ,— ծիծաղեց Պարույրը,— կան հենց մեզ մոտ՝ Հայաստանում... Լիքն են դըրանցից...

Ծխախոտը վառեց ու շարունակեց.

— Կա էսպիսի մի արարած, կոչվում է ուշ ո ւ... Էդ ուշուն համ քայլում է, համ լողում է, համ թռչում է, համ երգում է... Բայց բոլորից էլ քիչ-քիչ: Քայլելիս շարունակ գլորվում է աջ ու ձախ ու շուտ-շուտ ընկնում, լողում է միայն ծանծաղուտում և այն էլ մետրից ոչ ավելի, թռչում է հավի չափ և ծղրտոցն էլ զզվելի է... Ավելի լավ չէ՞ր լինի, որ մեկն իմանար դրանցից, բայց կատարյալ: Այսպիսի էնցիկլոպեդիստն ո՞ւմ է պետք, ա՛սա:

***

Այս արդեն Երևանում էր. իրենց տանն էինք:

— Դուրս գանք մի քիչ օդ շնչենք,— առաջարկեց նա:

Դուրս եկանք: Փափուկ ձյուն էր: Եվ դեռ շարունակում էր գալ: Ձյան բուրմունքը և թարմությունը կլանեցինք հաճույքով: Ոտքով իջանք մինչև Լենինի հրապարակ: Ես վաղուց էի նկատել, որ Պարույրը սիրում է ոտքով ման գալ: Մի անգամ էլ, ամռանը, աշխատանքից հետո, մեքենայով գնում էի Արտաշատ: «Երևան» կինոթատրոնի մոտ նկատեցի Պարույրին: Մեքենան արգելակեցի ու իջա:

— Ո՞ւր ես գնում:

— Տուն:

— Որտեղի՞ց ես գալիս:

— Գյուղից: Այսինքն՝ կայարանից:

— Իսկ ինչո՞ւ ոտքով: Մինչև Կայան ո՞նց պիտի գնաս: Նստիր մեքենան՝ հասցնեմ տուն:

— Բա ոտքերն ինչի՞ համար են տրված: Էնպես որ գնա... մարդիկ քայլելը, երևում է, կմոռանան:

Ոչ մի կերպ չկարողացա համոզել: Մի քիչ խոսելուց հետո, բաժանվեցինք:

Եվ այսպես՝ Լենինի հրապարակում ենք: Ամեն քայլափոխի՝ ծանոթներ, գրկախառնություններ... Մտանք գրախանութ, որն այն ժամանակ գտնվում էր Աբովյանի և Սպանդարյանի հատման տեղում: Գրախանութը նման



digitised by A.R.A.R.@

էր մի ահավոր մեղվափեթակի: Վաճառվում էր «Մարդը ափի մեջ»... Խլխլում էին իրար ձեռքից: Պարույրի մուտքը մի նոր իրարանցում առաջ բերեց:

— Ընկե՛ր Սևակ, մակագրե՛ք:

Մի քանի տասնյակ ձեռքեր միաժամանակ մեկնվեցին: Նա հազիվ հասցնում էր հարցնել անուն-ազգանունները և մակագրել: Երեք, հինգ, տաս... Իսկ մեկնված ձեռքերը քանի գնում ավելանում էին:

— Ընկե՛ր Սևակ, ի՛մն էլ...

— Ընկե՛ր Սևակ, խնդրում եմ...

— Էլ ոչ մի մակագրություն:

Ըստ երևույթին, հոգնեց: Եվ, համարյա զոռով, դուրս պրծավ իր երկրպագուների սեղմ օղակից:

— Տեսնո՞ւմ ես ինչքան երկրպագուներ ունես,— ասացի ես:

— Իսկ դու գիտե՞ս ինչ է ասել Կլոպշտոկը՝ «Ես կուզեի իմ երկրպագուները ինձ ավելի քիչ գովեին և ավելի շատ կարդային»:

Նոր երկրպագուների և ծանոթների հանդիպելու վախից առաջարկեց Սպանդարյանով գնալ:

— Այստեղ ավելի հանգիստ է,— ասաց նա:

Ձմռան կարճ օրը մթնում էր արդեն: Երբ տուն վերադարձանք, ընթրիքի սեղանը սպասում էր մեզ... Ժամը մեկին մոտ «բարի գիշեր» մաղթեցինք իրար: Նելլին ինձ համար անկողին բացեց ծալովի մահճակալի վրա՝ Պարույրի աշխատասենյակում: Քունս չէր տանում: Նստած Պարույրի աշխատասեղանի մոտ կարդում էի «Մարդը ափի մեջ»: Հետո գիրքը դրեցի մի կողմ ու սկսեցի գրել: Ստացվեց մի ամբողջ պոեմ՝ «Վիճարկում եմ իմ վիճակը»... Քնեցի միայն լուսադեմին: Ուշ արթնացա: Իսկ մինչ այդ Պարույրը զգուշորեն մտել էր սենյակ ու կարդացել իմ նոր գրած պոեմը: Երբ աչքերս բացեցի, ասաց.

— Լավ է ստացվել, բայց Պարույրի շունչն է զգացվում...

— Բա որ Պարույրի հարկի տակ գրեմ, Պարույրի գրասեղանին և Պարույրի գրչով, էլ ո՞ւմ շունչը պիտի զգացվեր,— ծիծաղեցի ես:

1968 թվականին Պարույրի խմբագրությամբ լույս տեսավ իմ բանաստեղծությունների ժողովածուն՝ «Տարերքը»:

— Ինչո՞ւ էն պոեմը չես դրել գրքիդ մեջ,— հարցրեց նա:

— Չեմ ուզում ձեռք տալ, չեմ էլ ուզում այդ ձևով հրատարակել:

Մինչև հիմա էլ մնացել է թղթերիս մեջ: Միայն երբեմն կարդում եմ ինձ համար ու երանի տալիս այն անմոռանալի օրվան:

(շարունակելի)



ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

## ԵԹԵ ՄԻ ՕՐ ՄԱՅՐԱՄՈՒՏԻՆ

Եթե մի օր մայրամուտին,
Կանգնեմ բարձրիկ լեռան վրա,
Բռնեմ փափուկ փեշը մութի,
Ծերպ անեմ, որ այդպես մնա,
Մութ գիշերվա փոքրիկ ծերպից
Հավքը կելնի, ուրախ կերգի,
Կելնի կովը կբառաչի
Ու կարածի լեռան լանջին:
Դուրս կվազի ուլիկը խենթ
Չար ու բկլիկ խոզուկի հետ:
Փոքրիկ ծերպից կելնի սիրով
Քուրիկս իր տիկնիկներով,
Դուրս կվազեն բոլոր նրանք,
Ով չի ուզում մթնում մնալ...
Դուրս չի գա լոկ խելոք շունը,
Շունը պիտի հսկի տունը:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

digitised by A.R.A.R.@



# ՔԱՐԱՐԾՎԻ ՄԱՀԸ

Ես երբեք չեմ մոռանա այդ դեպքը:

Ձմեռային ցուրտ օր էր: Օդում ագռավների մի մեծ խումբ էր հավաքվել: Սկզբում ուշադրություն չդարձրեցի, հետո նկատեցի, որ մի քարարծիվ թառել էր, ավելի ճիշտ կուչ էր եկել բարձր հեռագրասյան կատարին:

Ագռավները հոծ խմբերով գալիս. իջնում էին քարարծվի գլխին, կտցահարում, փետրահան անում, կռնչում ու վեր բարձրանում, ապա նորից ու նորից շարունակում իրենց չարախինդ, նենգ խաղը: Քարարծիվը չէր էլ փորձում պաշտպանվել, հավանաբար այլևս ուժ չուներ:

Ես վազելով մոտեցա հեռագրասյանը, քար փնտրեցի, ուզեցի պաշտպանել քարարծվին և քշել գիշատիչ թռչուններին: Սակայն ուշ էր: Մինչև քար կգտնեի, նրա ծանր մարմինը պոկվեց վերևից և քարի նման ընկավ ոտքերիս մոտ: Բարձրացրի, արդեն սառած էր: էր: Ես քարարծվի կրծքից մի քիչ ներքև չորացած արյան շիթ նկատեցի: Որսորդական գնդակը, գուցե և պատահաբար, խոցել էր հպարտ թռչնին: Վերցնելով քարարծվի դեռ չսառած դին, տարա հողին հանձնելու:

Ագռավները բարձր կռնչալով ցրվեցին, կարծես դժգոհելով, որ որսը խլվեց ձեռքերից:

ՎԱՐՈՒԺԱՆ ՍԱՐԳՍՅԱՆ
Ապարանի շրջանի Մուլքի գյուղի
8-րդ դաս. աշակերտ

# ԾԱՂԻԿՆ ՈՒ ԱՐԵՎԸ

Դիմացի բլրին,
Չոր քարի վրա
Գլխիկն էր հանել
Մի ճերմակ ծաղիկ:
Իսկ նրա շուրթին՝
Արևի շողքին
Ժպտում էր անուշ
Մի փոքրիկ ցողիկ:
Եվ ես մոտեցա
Հարցրի նրան.
— Ծաղի՛կ, ա՜յ ծաղիկ,
Այդ ի՞նչ ցողիկ է
Սիրուն աչիկիդ:—
Նա ինձ շշնջաց.
— Արևի շողքից իմ տխրությունը
Իսկույն չքացել,
Եվ դառն արցունքս
Ցողիկ է դարձել:—
Ասաց ու ժպտաց,
Գլխիկն օրորեց
Եվ նորից ջերմ-ջերմ
Արևին նայեց:

ԳԱՅԱՆԵ ԱՓԻՆՅԱՆ
Կիրովականի Ակ. Բակունցի անվ.
№ 7 միջն. դպրոց, 8-րդ դաս.

# ԳԱՐՆԱՆԱԲԵՐ ՍԻՐՈՒՆ ԹՌՉՆԱԿ

Ա՜խ դու գարնան
Սիրուն թռչնակ,
Իջի՛ր մեր այգում,
Պարտեզում, բակում:
Երգի՛ր քո ձայնով քաղցրիկ,
Գարո՛ւն բեր քո թևերով,
Թռի՛ր անծայր կապույտը
Եվ այնտեղից բեր
Ծիլ ու ծաղիկ,
Երգ ու պար
Եվ պատրանքը
Երկնքի:
Ա՜խ դու գարնան
Սիրուն թռչնակ...

ՆՈՒՆԵ ԼԱԶԱՐՅԱՆ
Վերին Ճամբարակ, 8-րդ դաս.
Կրասնոսելսկի շրջան,



digitised by A.R.A.R.@



Վարդուհի Սմխչյան
Լենինական, 12 տ.



«Նատյուրմորտ»
Կարինե Առուշանյան, Երևան, 3-րդ դաս.

«Քրոջս դիմանկարը»
Տաթևիկ Բոզոյան, Լենինական, 4-րդ դաս.



«Ծաղիկներ»
Սարգիս Աղաջանյան, Երևան, 3-րդ դաս.





digitised by A.R.A.R.@

**ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ**

# Սագերի առաջնորդը



Գարուն էր: Մեծ գետերը բացվել, ըշտապում էին դեպի ծով: Ծայր հյուսիսում սկսվել էր սառցահոսքը: Դա տարվա ամենալավ ժամանակն էր՝ օրը բացվում, երկարում էր, դեռ մոծակներ չկային, բացվում էին լեռնային գետերը, լճակները, արթնանում քուն մտած ծառերն ու կենդանիները: Վերջանում էին ահեղ ցրտերը: Ձկները շտապում էին դեպի գետերի թարմ ջրերը, նորից սկիզբ էր առնում ընդհատված կյանքը:

Մեր տնակը գետի ափին էր, տարին մեկ անգամ զայրանում, փքվում էր ծերունի գետը, դուրս էր գալիս իր ափերից և հեղեղում շրջակայքը: Բնությունն կարծես տեղահան էր լինում գարնան օրերին և ոչինչ չէր հանդուրժում իր ճանապարհին, բացի ազատությունից: Ամեն անգամ տասն ամսվա կաշկանդումը սառնամանիքների մեջ նրան հասցնում էր հուսահատության: Ամեն տարի նայում էր միապաղաղ երկնքին, տնքում ցրտահար, նրան թվում էր, թե երբեք այլևս գարուն չի գալու, արև չի լինելու: Տանջանքով և հուսահատորեն էր հասնում գարնան օրերին, ի՜նչ ծանր էր սպասելը, օրը տարի էր դառնում, օրը տանջանք էր դառնում և վերջը չէր երևում:

Եվ մի օր էլ վայրի սագերի առաջնորդի կոհնչը տարածվեց գետի ափերին: Սկսվում էր թռչունների չուն: Բարձրից էր թռչում սագերի երամը: Այնտեղ՝ վերևում քամիներ չկային: Տայգայի խորքում սառնամանիքների մեջ դեռ կաշկանդված գետերն ու լճակները չէին բացվել: Սագերը չէին տեսնում նրանց կապույտ հայելիները:

— Ցածում դեռ ձմեռ է,— ասաց երամի ետևից թռչող սագերից մեկը,— շուտ ենք ճամփա ելել:

— Շուտ չէ,— անմիջապես պատասխանեց առաջնորդ սագը,— տեսնո՞ւմ եք այս ձյուներն ու սառույցները,— ձայնը բարձրացրեց, որպեսզի երամի վերջից ընթացող սագերն էլ լսեն,— վաղը սրանք արդեն կարող են չլինել: Այստեղ ամեն ինչ շատ արագ և անսպասելի է կատարվում: Գարունն այստեղ միանգամից է գալիս: Հիմա նայեցեք ձախ՝ ձեր առջև է Մորժոտ սարը: Նա գտնվում է ծովի մակերևույթից մոտ երեք հազար մետր բարձրության վրա: Սա ամենաբարձր լեռն է մեր ճանապարհին: Այս ամսին լեռան գագաթները միշտ ամպերի մեջ են լինում: Մենք պետք է շրջանցենք լեռը և դուրս գանք Բերելյոխ գետի ավազանը: Հիմա մենք գտնվում ենք Բուրխալա լեռնանցքի մոտակայքում, Սուսուման գետի ակունքներում: Այստեղ գետը արագավազ է, սակավաջուր և դեռ գետի նման չէ: Աշնանը, երբ տուն վերադառնանք, Մորժոտը մեզ կերևա հակառակ կողմից, Տանգարան՝ նույնպես: Այստեղ շատ կարևոր է ճիշտ կողմնորոշվելը: Պատահում է ամպերն այնքան ցած են իջնում և այնպես են կուտակվում ճանապարհի վրա, որ ոչինչ նշմարել հնարավոր չի լինում և ստիպված ենք լինում վայրէջք կատարել անծանոթ, անհարմար վայրերում: Քիչ հետո կմոտենանք Տանգարա լճակին, եթե այն բաց լինի, վայրէջք կկատարենք, իսկ եթե փակ լինի՝ կշարունակենք մեր ճանապարհը և վայրէջք կկատարենք մեզ համար անցանկալի մի վայրում, որտեղ ապրում են եկվոր մարդիկ, բնիկներ չկան: Իսկ եկվորները վատ մարդիկ են, նրանք կկրակեն մեզ վրա, մենք ստիպված կլինենք շատ մեծ բարձրությունից անցնել, որ նրանց գնդակները մեզ չհասնեն, և ցածը չենք տեսնի: Իհարկե, ինչ որ ասացի՝ ձեզ չի վերաբերում: Խնդրում եմ հիմա նայեցեք ցած: Տեսնո՞ւմ եք կեչիների այս շարքերը, որ սև մոմերի նման լեռան լանջերից իջնում, գնում են դեպի Տանգարա լճակը: Եթե Տանգարան բաց լինի՝ վայրէջք կկատարենք:

Թռչում էր սագերի երամը դեռ լրիվ չարթնացած տայգայի վրայով: Առաջնորդ սագը փորձված էր, արդեն քանի անգամ էր առաջնորդել երամները: Նա լավ գիտեր չուի ուղին, լավ էր կողմնորոշվում աստղերով և երկրի վրա իր նշաններն ուներ: Համարյա ոչինչ չէր փոխվում նրա



digitised by A.R.A.R.@

ճանապարհին, եթե փոխվում էին, փոխվում էին սագերը: Անցած տարի կարմիր գետակի վրայով անցնելիս որսորդները սպանեցին երամի նրա ամենասիրելիին և նա ընկճվեց, նույնիսկ մտածեց հրաժարվել առաջնորդի դերից:

Այս տարի երամն ընկավ քամու ուժեղ հոսանքի մեջ և քիչ մնաց բոլորն էլ իրար ընդմիշտ կորցնեին: Նա այդպես էլ չհասկացավ, թե ի՞նչ քամի էր այդ և որտեղից սկիզբ առավ: Սովորաբար ճանապարհի այդ հատվածում քամիներ չէին լինում: Անձրևներ, կարկուտներ, կայծակներ, ինչեր ասես, որ չկան չուի ճանապարհին:

— Քիչ հետո մեր առջև փռվելու է Տանգարա լճակը,— ասաց առաջնորդ սագը,— ուշադի՛ր եղեք: Ես կարծում եմ, որ այն բաց է լինելու: Ծարքերը պահպանե՛ք և այդքան հաճախ մի՛ թափահարեք թևերդ: Ահա Տանգարան բաց է: Իջնում ենք միասին,— նա այնպես կռնչաց, որ ձայնն արձագանքեց կիրճերում:

Սագերի երամը սկսեց ցածրանալ: Առաջնորդը երբեք միանգամից չէր իջեցնում երամը, այնտեղ էին իր ծնողները՝ դանդաղաշարժ մայրը, արդեն հոգնած ծերունի պապը, որ այլևս չէր կարողանում կողմնորոշվել և տրտնջում էր, որ ամեն տարի մի բան փոխվում է չուի ճանապարհին: Իր քույրերը, եղբայրները և որդիներն էին՝ իր ամբողջ գերդաստանը: Նա հրամայեց մի քանի անգամ պտույտներ գործել Տանգարայի վրա և առանց իր հրամանի չիջնել:

— Հասկացա՞ք ինձ,— հարցրեց նա և շարունակեց.— Այս տեղերում անգղներ, արծիվներ չկան: Գիշերները ցերեկվա նման լուսավոր են լինում, արևը մայր չի մտնում: Ձուկը շատ է, անմահական ջրերով աղբյուրներ կան այս լեռներում, որոնց համար էլ մենք գալիս ենք այս կողմերը, որ մեր ճուտերը առաջին ջուրը խմեն անմահական ջրերից, այն գեղեցկություն և դիմացկունություն է տալիս մեզ: Սա ձեր ծննդավայրն է, փոքրիկնե՛րս:

Մարդիկ լսեցին առաջնորդ սագի կրռինչը: Կանգ առան արահետների վրա, հայացքներն ուղղեցին դեպի գորշ երկինքը և շատ զարմացան.

— Այ քեզ բա՜ն,— ասացին նրանք,— դեռ ջրերը չեն բացվել, մամուռը չի բարձրացել, իսկ սագերն արդեն գալիս են:

— Ես պետք է նաև զգուշացնեմ ձեզ,— շարունակեց առաջնորդ սագը, որ այստեղ երկար ենք մնալու: Մեր ճանապարհի վրա սա ամենաապահով տեղն է: Այստեղ պատահական մարդիկ չկան, այստեղ ապրում են այս երկրի բնակիչները, սրանք օրենքներ ունեն, տայգայի օրենքները, որոնք արգելում են մեզ վրա կրակել մինչև աշուն:

Երամն իջավ Տանգարայի խաղաղ ջրերին: Լույսը բացվեց, արևի առաջին ճառագայթները երևացին հորիզոնի վրա, փշատերև ծառերը ստվերներ նետեցին:

— Բարի լո՜ւյս, բարի ժամանո՜ւմ, մա՛յր սագեր,— ողջունեց նրանց երամի առաջնորդ սագը, թևերը ծալեց ու մի կողմ քաշվեց հսկելու համար:

— Բարի լո՜ւյս, բարի լո՜ւյս,— ղղնչացին մայր սագերը և շորորալով ուղևորվեցին դեպի լճակի կենտրոնը: Արևի առաջին ճառագայթները արծաթագործեցին նրանց փետուրները, և կենտրոնից դեպի նիրհող ափերը լճակով մեկ վազեցին ջրերի մանր կոհակները:

— Ինչպես երևում է, եղանակը փոխվում է,— ասաց առաջնորդ սագը,— մենք այստեղ մնալ չենք կարող: Լեռներում ամպեր են կուտակվում, մեր ճանապարհը կփակեն, պետք է շտապենք, որ ապահով տեղ հասնենք:

— Ինչո՞ւ է այս լճակը կոչվում Տանգարա,— հարցրեց մայր սագերից մեկը:

— Ես չգիտեմ,— ասաց առաջնորդ սագը, — բայց հիշում եմ, որ մեծ մայրս ասում էր, թե սա իսկական լիճ չէ, ճահճուտ է, բայց այս ճահճուտում իսկական հրաշքներ կան: «Ամառվա ընթացքում այստեղ ճերմակ լոտոսներ են հայտնվում, — ասում էր մեծ մայրս,— մի տարի հայրիկիդ հետ իջանք այս լճակի մոտ և բույն դրեցինք առափնյա թփուտներում. դու այստեղ ծնվեցիր, որդի՛ս: Տաք, արևոտ օր էր: Այնպես խաղաղ և այնքան հանգիստ էր օրը, որ ոչ մի ճյուղ չէր շարժվում, ջրերի վրա շշուկ անգամ չկար: Մենք մոտեցանք լճակին, հանգուցյալ մեծ հայրդ սիրում էր նայել մաքուր ջրերում լողացող ձկներին: Մեկ էլ տեսնեմ ծերուկը արձանի պես անշարժացավ և նշան արեց, որ ես էլ ոչ մի շարժում չանեմ: Ես վախեցա, բայց նա հիացմունքով նայում էր ջրին: Իսկ ջրի տակից այդ պահին երևան էին բարձրանում ճերմա՜կ, ճերմա՜կ գնդաձև ծաղիկներ: Նրանք բարձրացա՜ն, բարձրացա՜ն և հասան ջրի մակե-



digitised by A.R.A.R.@

րեսին ու կանգ առան: Մի քանի վայրկյան հետո այդ գնդիկներն սկսեցին բացվել և արծաթե սկուտեղների պես օրորվել ջրի երեսին: Ավելի չքնաղ մի տեսարան մենք դեռ չէինք տեսել: Այնքան մաքուր էին, այնպես նուրբ էին ու գեղեցիկ այդ լոտոսները, որ խեղճ ծերուկը զարմանքից ծղրտաց: Եվ հենց այդ պահին բոլոր լոտոսները շարժվեցին, արագությամբ փակվեցին, դարձան արծաթե գնդիկներ և շտապով իջան ջրի հատակն ու չքացան մեր հայացքից»:

— Մենք տեսանք աշխարհի հրաշքներից մեկը,— ասաց ծերուկը,— նրանք դուրս եկան փոշոտելու իրենց ծաղիկները, դու զգացի՞ր, թե ինչպիսի մեղմ հոսանք առաջացավ և ինչպես դողացին այդ քնքուշ ծաղիկները, երբ փոշին նստեց նրանց վրա: Նրանք ձագեր կունենան,— ասաց ծերուկը:— Ես այդ օրը երբեք չեմ մոռանա, որդի՛: Դա քո ծննդյան օրն էր: Եթե մենք ամառվա ընթացքում մեկ էլ լինենք այս տեղերում, ես քեզ ցույց կտամ այդ չքնաղ լոտոսները:

— Ապա ուշադի՛ր նայեցեք ձեր շուրջը,— առաջնորդ սագը դիմեց երամին,— լճակի ձախ ափից բարձրանում է Մորժոտի լեռնապարը, որը դարպասների նման փակում է քամիների և հողմերի ճանապարհը: Ձախից Տանգարայի մեջ են թափվում Լուկիչի թարմ ջրերը: Արևելքից լճակը բաց է ազատ վայրէջքի և թռիչքի համար: Տանգարան իր ավանն ունի, այնտեղ երկու տնակ կա, Լուկիչում՝ հինգ, և այդ տնակներում ապրում են այնպիսի մարդիկ, որ գարնանը թռչուններ չեն խփում, ձուկ են որսում:

— Աղվեսներ և ուրուրներ չկան այս տեղերում, քամիները քիչ են,— շարունակում է առաջնորդը,— Տանգարան մեր ճանապարհի ամենալավ լճակն է: Եթե հոգնել եք, կարող եք հանգստանալ: Այս տեղերում մի թռչուն կա, ջրից շատ է վախենում: Եղևնահավ է անունը, բավականին տգեղ թռչուն է՝ ոտքերը հաստ, կտուցը հաստ, ձայնը շատ ուժեղ է, նրա ամենաթույլ կանչոցը լսվում է տայգայի բոլոր մասերում: Նրան ճանաչելը դժվար չէ. թևերը, պոչը կարճ են, ինքը գորշ գույնի, երբեմն գնդակի նման կլոր է երևում: Շատ անհանգիստ թռչուն է, երբ տայգայում որևէ դժբախտություն է պատահում, ասենք, գայլը եղնիկ է բռնել կամ աղվեսը՝ բադ, նա այնպիսի աղմուկ է բարձրացնում, այնպես է ճղճղում, որ քնած մարդիկ անգամ արթնանում են:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

Նա մեզ էլ կարթնացնի, եթե քնով անցնենք: Հանգիստ քո՞ւն ձեզ, մա՛յր սագեր,— ասաց առաջնորդ սագը և գնաց հսկելու իր տեղը: Երամը քուն մտավ: Ամպերը վաշտ-վաշտ շտապում էին դեպի Մորժոտի գագաթը, կուտակվում, սև զանգվածներ էին դառնում նրա գագաթին: Առաջնորդ սագը սառնություն զգաց: Փետուրները հեռացրեց մարմնից, որից նա մի տեսակ մեծացավ, և ցրտի զգացողությունն էլ պակասեց: Նայեց Մորժոտ լեռանը, շուրջը զննեց և թույլ կռնչով ոտքի հանեց երամը: Ինքը թողեց հսկիչ բարձունքը, ջուրն իջավ և լողաց դեպի մայր սագերը:

— Մորժոտի վրա ամպեր են նստել,— ասաց նա,— կարկտաբեր ամպեր են, պատրաստվեցե՛ք թռիչքի՛:— Երամը պատրաստվեց: Առաջնորդ սագը առաջ անցավ, մեկ էլ կռնչաց և անմիջապես օդ բարձրացավ:

— Հիմա բարձրությո՛ւն ենք վերցնում,— հրամայեց նա,— պոչներդ ցա՛ծ պահեք:— Տանգարան արձագանքեց նրա հզոր թևերի աղմուկին:

— Երկրո՛րդ շրջանն ենք կատարում Տանգարայի վրա,— հրամայեց առաջնորդ սագը, և երամը ահագին բարձրության հասավ այդ ընթացքում:

— Հիմա թռչում ենք ուղի՛ղ, պոչներդ իջեցրե՛ք, ոտքերդ յա՛վ ծալեք:— Եվ երամը սուր անկյան տակ գնաց դեպի Մորժոտ լեռը:

— Նայեցեք դեպի ձա՛խ: Քիչ հետո երևալու է Բերելյոխ գետի աջ ափը փակող լեռնաշղթան: Այդ լեռնաշղթայի տակ ջրի մեծ կուտակումներ կան, ջուրը խորանում է, կախված ժայռեր կան, որոնք մեզ կպահպանեն կարկուտից և քամիներից: Այս վայրերում բնակչություն չկա, մի քանի ընտանիք՝ տեղացիներից բացի՝ բարեբախտաբար նրանք էլ մեզ սուրբ թռչուններ են համարում, մեզ վրա չեն կրակում: Ես, իհարկե, կնախընտրեի Բույունդա գետի խառնարանը: Բույունդա և Սրեդնիկան գետերի ջրերը խառնվում են մի բաց, լայն հարթության վրա, որտեղ թշնամուն կարելի է նկատել դեռ շատ հեռվից՝ վերին Սիմչանի հարթավայրն է այդ, ափերը ավազոտներ են, փոքրիկ աղբյուրներ կան, արևը լավ է տաքացնում, բույն հյուսելու թփուտներ էլ կան, իսկ թշնամիներ համարյա չկան: Դա բավականին հեռու է, երեք, չորս օրվա ճանապարհ: Ես տեսնում եմ, որ դուք հոգնել եք, ձեր թևերի շարժումները համաչափ չեն, խախտում եք թռիչքի սուր անկյունը, վախենում եմ, որ կոշտուկներ կառաջանան ձեր թևերի տակ և աշնան թռիչքի ժամանակ պատրաստ չեք լինի թռիչքի: Հիմա նայեցեք ցա՛ծ, արդեն երևում է Բերելյոխ գետի ժապավենը, նշմարվում են այն ժայռերը, որոնց տակ պետք է պատսպարվենք: Մի քիչ արա՛գ թափահարեք թևերդ, ամպերը մոտենում են մեզ:

Սագերը սկսեցին արագ թափահարել թևերը, անկանոն շարժումներ անել, խախտեցին սուր անկյան պարտադիր շարքը: Առաջնորդ սագը կռնչում, անընդհատ շտապեցնում և պահանջում էր վայրէջքի կարգը չխանգարել: Երբ արդեն երամը ջրին էր մոտեցել, իջավ նախ առաջնորդ սագը, ինչպես միշտ, և նորից կռնչաց.

— Իջա՛նք...

Ամպերը որոտացին, առաջին որոտն էր, և կայծակները շլացուցիչ լույսով լցրեցին կիրճերն ու ձորերը:

— Ի՞նչ սոսկալի է,— շշնջացին մայր սագերը: Երամը ետ քաշվեց և լողաց դեպի ժայռերի տակ ու տեղավորվեց հանգիստ ու ապահով:

— Եթե վաղը օրը բացվի, քամիներ և անձրևներ չլինեն, կգնանք Բույունդա գետի ափերը,— ասաց առաջնորդ սագը,— շատ լավ տեղեր են, Բույունդա-Սրեդնիկան գետերի խառնարանն է, որտեղից օրվա պարզ ժամերին երևում են վերին Սիմչանի հարթավայրը, Կալիմա գետի ծանր ջրերը և տաք ավազների կույտերը: Մեր նոր սերունդն այնտեղ կծնվի:

Այդ նույն պահին ինչ-որ տեղից կրակեցին սագերի վրա: Առաջնորդ սագն ուժեղ ցավ զգաց ձախ կողին, գլուխը պտույտ եկավ: Սագերը խուճապով ցվրվեցին, օդ բարձրացան:

Քիչ անց ցածից, ժայռերի մոտից վեր էին բարձրանում մարդ հիշեցնող երկու կերպարանք, նրանցից մեկի կողքին կաշվե փոկի օղակից կախված էին երկու սագ՝ մեկը գարնան առաջին երամի առաջնորդ սագն էր, մյուսը՝ սագ մայրերից մեկը: Նրանք քայլում էին գոհ, դանդաղ: Ծանր, տեղատարափ, սառցախառն անձրևը անթափանց վարագույրի պես ծածկում էր նրանց ճանապարհը:



digitised by A.R.A.R.@

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՊԱՌԱՎԻ ՈՒԼԵՐԸ

(ժողովրդական)

Բյուրակ սարի փեշերի տակ,
Մի շենիկում մեն ու մենակ
Մի խեղճ պառավ տանը ուներ
Երեք փոքրիկ սիրուն ուլեր:
Բյուրակ սարեր, բացվող գարուն,
Բյուր լճերից՝ բազում առու...
Ու պառավը ձեռքին՝ իլիկ,
Առաջն արած երեք ուլիկ
Բարձրանում է բլուրն ի վեր,
Ծուրջը՝ ձյան լաց, ծնծաղիկներ...
Արածում են երեք ուլիկ,
Ու պառավը ձեռքին իլիկ,
Պտտում է իլիկն ու հեզ
Մի տաղիկ է երգում այսպես.
— Դե՛, խաղացե՜ք, ուլիկնե՛ր,
Անցավ գնաց ցուրտ ու ցավ,
Դե՛, արածե՜ք, ուլիկնե՛ր,
Գիժ մարտն էլ հեռացավ...—
Երգում է պառավն ինքն իր համար,
Դու մի ասի մարտը խելառ,
Չհեռացած Բյուրակ սարից,
Լսում է այս երգը ձորից...
Լսեց, լռեց ու ետ դարձավ,
Երկի՛նք հանեց բուք ու բորան...
Եվ պառավն ու ուլերը իր
Երկինք առած բքում կորան:
Բուքը անցավ, նորից գարուն,
Գյուղը փնտրեց, գտավ սարում
Խեղդված երեք սիրուն ուլիկ
Ու պառավին ձեռքին՝ իլիկ:
Այն օրվանից զրույցն այս հին
Ծուրթերից շուրթ գալիս է դեռ.
Գարնան կեսին մի բքոտ օր
Դեռ կոչվում է Պառվի ուլեր:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

digitised by A.R.A.R.@

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Քաջը չձանձրացող ձիավոր է

Հարյուր տարուց մի քիչ ավելի է, ինչ ձին, որ մի քանի հազարամյակ շարունակ աշխարհն աշխարհին էր կապում և որի խրրխինջն ու սմբակների դոփյունը լսվում էին

ՁԻ
ԱՍՊ
ՀՈՎԱՏԱԿ
ՋԱՄԲԻԿ
ԵՐԻՎԱՐ
ՆԺՈՒՅԳ
ԺԱԿ
ՄԱՏԱԿ
ՍԱՐԱԿ
ՄՏՐՈՒԿ

համարյա բոլոր ահեղ արշավանքներում ու ճակատամարտերում, ավարտեց իր պատմական առաքելությունը: Նրան փոխարինելու եկան գնացքը, ավտոմեքենան և ինքնաթիռը:

Որպես հեծկան ու քարշող ուժ՝ ձիու դերը նվազեց: Բայց նոր տեխնիկան չկարողացավ միանգամից հրաժարվել նրա ծառայությունից: Ծնվեց ձիու անունը նորագույն փոխադրամիջոցների ու սարքավորումների, բազմատեսակ շարժիչների հետ կապող ձիաուժ տերմինը, որն այժմ համարվում է հզորության հնացած միավոր:

Ձեր դասագրքերում դուք հաճախակի եք հանդիպում այդ բառին: Ֆիզիկայի ուսուցչից լսել եք դրա ավելի հանգամանալից բացատրրությունը:

Բայց դրանով ամեն ինչ չի վերջանում: Հայերենում ձիու հետ կապված հարյուրավոր բառեր կան, որոնք երբեք գործածությունից դուրս չեն գա: Դրանցից մի քանիսը համարյա երեք հազար տարեկան են: Մի զարմացեք, որ ձիու հետ կապված հայերեն բառերն այդքան տարբեր են ու շատ: Բանն այն է, որ հնում Հայաստանը հռչակված է եղել որպես



digitised by A.R.A.R.@

ընտիր նժույգների հայրենիք: Ձիու տեսակները այնքան շատ են եղել, որ մեր նախնիները ստեղծել են բառերի մի խումբ: Ահավասիկ: Արու ձին կոչվում է հովատակ կամ որձաձի, էգը՝ զամբիկ, ճակ, ճայիկ, մատակ, մատյան, սարակ, զարմուհի: Հիմա դուք կարող եք հարցնել, այս ի՞նչ բան է, ի՞նչ կարիք կա էգ ձիու համար յոթ հոմանիշ ստեղծել, ինչո՞ւ են մեր պապերն այսպիսի շռայլություն թույլ տվել: Բայց մենք միշտ ասել ենք, որ մեր պապերը բառերի հանդեպ շատ նրբազգաց են եղել և «անտեղի» բառ չեն ստեղծել: Եթե մեր նախահայրերին հարցնեիք, նրանք կասեին՝ էգ էլ կա, էգ էլ: Իրավ է, էգ ձիուն անվանում են զամբիկ, ճակ, ճայիկ, մատակ, մատյան, սարակ, զարմուհի, բայց դրանք կիսով չափ են հոմանիշներ և որոշ հատկություններով տարբերվում են իրարից: Այսպես, զարմուհի են կոչել այն էգ ձիուն, որից սերունդ են ստացել: Զարմուհի բառի արմատում (զարմ-ցեղ, սերունդ) հենց այդ իմաստը կա:

Արշավի համար հեծկանին անվանել են արշավաձի, լավ քայլող, ճանապարհի համար հեծնելու ձիուն՝ ռահվար (ռահ նշանակում է ճանապարհ, ուղի, վար՝ վարել, քշել), բեռնակիր ձիուն՝ գրաստ (պիտի հիշել, որ գրաստ են կոչվում նաև ջորին ու էշը), հեծնելու սովորական ձիուն՝ երիվար, խոշոր ձիուն՝ անդրուվար, թեթև ու համաչափ ընթացողին՝ վարգաձի, արու քուռակին՝ մըտրուկ, սպիտակ ձիուն՝ ճերմակ, դեղնավուն-կարմիր ձիուն՝ աշխետ, մոխրագույնին՝ մողոշիկ, թխակարմիր ձիուն՝ շառատ, սև ու ճերմակ գույն ունեցողին՝ ճանճկեն, բծավոր ըսպիտակ գույն ունեցողին՝ ճարտուկ, սպիտակախայտ ոտքերով ձիուն՝ կոստնտոտիկ և այլն: Հիմա դուք կասեք, այսքան թվարկելուց հետո՝ դարձյա՞լ և այլն: Այո, նմանություններ չսիրող մեր նախահայրերը նմանների մեջ տարբերակիչ մի երանգ էին գտնում և առանձին անուններ տալիս: Մենք անվանեցինք կարևորները: Բայց չի կարելի չհիշատակել ևս երկուսը: Նախ՝ հարսնաձին: Հնում այդպես էր կոչվում մատակ ձին, որի վրա հարսանիքից հետո նստեցնում էին հարսին և տանում փեսայի տուն: Այդ ձին զուգում էին, զարդարում: Այս սովորությունը մոռացության չի տրվել: Այժմ զարդարում են (հատկապես ճերմակ ժապավեններով ու տիկնիկներով) հարսանքավորների ավտոմեքենաները:

Մյուս բառը կոչվում է այրուձի: Դուք այդ բառին շատ եք հանդիպում հին աշխարհի մասին գրվածքներում ու պատմության դասագրքերում: Այրուձին կազմված է այր (տղամարդ) և ձի արմատներից և նշանակում է հեծելազոր:

Հավանաբար ձեզ ծանոթ են ձի բառով կազմված մի շարք բառաբարդումներ: Դրանցից են ձիաբեռ (մի ձիու տանելու բեռը), ձիաբույժ (ձի բուժող), ձիաբույծ (ձիաբուծության մասնագետ), ձիապան (ձի պահող), ձիավար (ձի վարող, քշող), ձիավարժ (ձի վարժեցնող), ձիավոր (հեծյալ), ձիաբոռ (ձիապիծակ, ձիաճանճ), ձիագի (ձիու ագի), ձիասարք (ձիու սարք), ձիարշավարան (ձիամարզարան, մրցասպարեզ):

Հին Հայաստանում ձիուն անվանել են նաև ասպ: Հիմա այդ բառն օգտագործվում է միայն բառաբարդումների մեջ: Եկեք ստուգաբանենք մի քանիսը: Սկսենք ասպետ բառից: Այն կազմված է ասպ (ձի)-պետ արմատներից, բառացի նշանակում է հեծյալ, իմաստով՝ ձիավոր ազնվական, հեծյալ իշխանավոր: Հայերեն ամենատարեց բառերից է: Հնում ասպետ բառը եղել է նաև հայ Բագրատունիների իշխանական տոհմի պատվանունը: Միջնադարյան Եվրոպայում ասպետներ են կոչվել միջին ու մանր այն ֆեոդալները, որոնք զինվորական ծառայություն էին կատարում: Մտաբերեցի՞ք Խաչակրաց արշավանքները, պատմության դասերին դուք շատ եք լսել խաչակիր ասպետների մասին: Իհարկե, դուք չեք մտածել, որ մինչև Եվրոպայի ասպետների հանդես գալը հայերեն ասպետ բառն առնվազն 1500 տարեկան էր: Իսկ ինչո՞ւ են եվրոպացի ֆեոդալներին ասպետներ կոչել: Որովհետև նրանք հեծյալ են եղել, ձի են ունեցել (էլ ի՞նչ ասպետ, որ հետիոտն լինի): Երևի դուք կարդացել եք Սերվանտեսի «Դոն Կիխոտ» վեպը: Հիշո՞ւմ եք, թե նրա հերոսն ինչպես է երազում ասպետության մասին: Հենց այդ ժամանակներում ասպետ բառն ստացել է անձնուրաց, հավատարիմ, վեհանձն, ազնիվ իմաստը: Այժմ էլ ասպետ բառն ամենից շատ գործածվում է այդ իմաստով: Հաճախ դուք լսում եք. «Նա ասպետաբար վարվեց»: Դա նշանակում է՝ նա վեհանձնորեն վարվեց: Բառացի եթե թարգմանվի, կստացվի՝ «հեծյալի պես վարվեց», որն անհեթեթություն է: Բայց չկարծեք, թե ասպետ բառի մյուս իմաստները մոռացության են մատնվել: Ընդհակառակը, նոր ժամանակներում ասպետն ստացել է մի ուրիշ իմաստ ևս: Այդպես են կոչում շքանշան կրող մարդուն:

Ասպետ բառին մոտ է սպարապետը: Սկըզբում եղել է ասպարապետ, հետո առաջին ա տառը սղվել է և մնացել է սպարապետը, որ



digitised by A.R.A.R.@

առաջ նշանակում էր ձիավորների պետ, ապա զորավար, զորահրամանատար, զորքերի գլխավոր հրամանատար։ Սպարապետ բառի հիմքում էլ ընկած են նույն ասպետ բառի արմատները՝ ասպը (ձին) և պետը։ Հայ ժողովրդի հերոսական դրվագներով լեցուն տարեգրքում անմոռանալի էջեր են գրել Մամիկոնյանների սպարապետական տոհմի նշանավոր դեմքեր Վարդան Մամիկոնյանը, Վահան Մամիկոնյանը և ուրիշներ։

Ասպ արմատից է կազմված ասպարեզ բառը, որ սկզբում եղել է երկարության չափ՝ հավասար 125 քայլի։ Այդ տարածությունը ձին անցնում էր մի թափով, դրա համար էլ ձիու անունով կոչվել է ասպարեզ։ Հետագայում չափի միավորը մնաց, բայց սկսեցին ասպարեզ կոչել նաև ձիարշավարանը, այն հրապարակը, որտեղ մրցում են ձիերով։

Հիմա ասպարեզ է կոչվում նաև գործունեության, զբաղմունքի բնագավառը։ Այդ բառը գործածության լայն ոլորտներ ունի։ Մենք ասում ենք. «Տիեզերագնացության ասպարեզում սովետական գիտնականները հասել են աննախընթաց հաջողությունների»։ Մեր մտքով չի անցնում, որ այս նախադասության մեջ գործածված ասպարեզում արմատը ասպ (ձի) բառն է։ Ձեզնից մեկն էլ կարող է քթի տակ ծիծաղել ու ասել՝ ձին ո՞ւր, տիեզերագնացությունն ո՞ւր։ Բայց պիտի հիշել, որ բառերը սահմաններ չեն ճանաչում։

Անդրադառնանք ասպ արմատով կազմված մյուս բառերին։ Ասպատակ։ Դուք շատ եք լսել՝ ասպատակել, ասպատակողներ, թշնամիները եկան ու ասպատակեցին Հայաստանը և այլն։ Այս բառի ստուգաբանությունը ձեզ համար դժվարություն չի ներկայացնում. ասպ (ձի)-ա-տակ, այսինքն ձիու տակ տալ։ Սա՝ բառացի։ Իմաստով՝ ձիով արշավող, հարձակվող։ Այսպիսով ասպատակել՝ նշանակում է ձիով արշավել և ոտքի կոխան դարձնել ամեն բան։

Ասպաստան։ Սա նշանակում է ձիերի ախոռ, ասպ (ձի)-ա (հոդակապ)-ստան (տեղ)։ Եվս մի քանի բառեր։ Ասպազգեստ (հեծյալի զգեստ), ասպազեն (հեծյալ մարտիկի զենք ու զրահ, ընդհանրապես զենք ու զրահ), ասպախաղ (ձիավարժություն), ասպախումբ (հեծելախումբ), ասպանդակ (թամբից կախված ոտնատեղ, զանգու), ասպանդակապահ (տիրոջ կամ հրամանատարի՝ ձի հեծնելու ժամանակ ասպանդակը պահող մարդ), ասպասարք (ձիասարք) և այլն։

Մնաց նժույգ բառը։ Նժույգ է կոչվում ընտիր ձին։ Բոլոր նժույգները ձիեր են, բայց ամեն ձի չէ, որ նժույգ է։

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Տեսեք, ինչպե՞ս են ճոճվում
Ծաղիկները լեռների,
Նրանք պատմել են ուզում
Հեքիաթները աստղերի։

Թե ծարավ եք, շուտ ասեք
Լեռան կանաչ ականջին,
Նա աղբյուրներ կծնի
Ստորոտին ու լանջին։

Իսկ թե երգել եք ուզում,
Միացեք այն հավքերին,
Գիշեր ու զօր զնգում են
Ջոր ու քարի ձեռքերին։

Ամեն մի լեռ էպոսի
Քուռկիկ-Ջալալին է, տե՛ս,
Ձյունն էլ նրանց գագաթի
Ծածանվում է բաշի պես։

Եվ արևը որպես թամբ
Անցնում է լուռ սարից սար,
Ով հերոս է, թող նստի,
Գնա անցնի յոթ աշխարհ։

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

# ԱԳՌԱՎՆԵՐԸ ԳՈՒՇԱԿՈՒՄ ԵՆ

— Էլի հավաքվեցին կռավանները,— չանչելով դեպի պատուհանը, որտեղից երևում էին երամներով անհանգիստ պըտըտվող ագռավները, քրթմնջաց տատս:

— Հա-ա՛, էս ձմեռ էլ ուժեղ սառնամանիքներ կլինեն,— ձոր տվեց պապս՝ ավելի մոտ նստելով կրակին:

Ես զարմացած նայեցի պապիս, ապա ժպտացի, կարծելով, թե նա լավ չլսեց տատիս ասածը:

Բայց եղանակներն, իրոք, գնալով ցըրտեցին, սաստիկ սառնամանիքներ սկըսվեցին:

Պապս, շատ ծեր ու հիվանդ, պառկած անկողնում, տխրությամբ նայում էր սառցակալած պատուհաններին և ինձ շուտշուտ հարցնում ագռավների մասին:

— Պապի՛կ, իսկ ի՞նչ կապ ունեն ագռավները եղանակի հետ,— հարցրի ես:

— Բալա՛ ջան, դա էլ իմ գիրքն է, որ կարդում եմ,— ժպտաց պապս,— բնության գիրքը, ա՛յ, լսի՛ր ու իմացի՛ր,— ասաց նա,— եթե ագռավները կեսօրին կռկռում են դեպի հարավ նայելով, ապա տաք եղանակ է սպասվում, իսկ եթե դեմքով դեպի հյուսիս են դարձած, ուրեմն եղանակները ցրտելու են, ցրտեր կլինեն նաև, եթե ագռավները կտուցները շարունակ թաքցնում են թևերի տակ, իսկ եթե նստում են ծառերի կատարներին,



ՆԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

**ուրեմն սառնամանիքներ են սպասվում, ուժեղ սառնամանիքներ են սպասվում, երբ երամներով պտտվում են օդում՝ անհանգիստ կերպով տեղից-տեղ փոխադրվելով...**

**Պապի խոսքը կիսատ մնաց, քամուց բացվեց տան դուռը և երևացին ծառերի ցածր ճյուղերի վրա նստած ագռավները:**

**— Պապի՛կ, իսկ ագռավները տաք եղանակը չե՞ն գուշակում,— ծածկելով դուռը՝ հարցրի ես, գիտենալով, թե ինչպիսի անհամբերությամբ է սպասում նա լավ եղանակներին:**

**Պապը ժպտաց.**

**— Գուշակում են, դու հետևիր նրանց:**

**Մի քանի օր անց վազեցի պապի մոտ.**

**— Պապի՛կ, պապի՛կ, ագռավները գետնին են նստել:**

**— Ուրեմն եղանակները կտրուկ կերպով տաքանալու են,— ուրախացավ պապը:**

ասում են, որ եղանակները կտրուկ տաքանալու են:

Երեկոյան պապը վերադարձավ գոմից, ասաց.

— Աստղերն երեսներին ոնց որ քող քաշած լինեն, նշան է, որ եղանակները տաքանում են: Առավոտյան ճնճղուկներն էլ մեզ նման ուրախ ու աշխույժ էին: Ծլվլում էին ու ծառից ծառ, թփից թուփ թռչկոտում, այն ճնճղուկները, որոնք, օրեր առաջ բուքը նախազգալով, խմբեր կազմած աշխատում էին ծառերի տերևաշատ ճյուղերի արանքներում թաքնվել:

Բակ ելա և ինչ տեսնեմ, մեր ձիուկը բոլով մեկ պառկել է ձյուների վրա: «Սատկել է մեր ձիուկը»,— տխրությամբ մտածեցի ես: Ձիուկը կարծես հասկացավ միտքս, տեղից բարձրացավ և ուրախ վրնջաց:

Իսկ տան ետևում՝ սագերն ու բադերը «լողանում էին» ձյան մեջ:

Պապիկն ասաց, որ նրանք բոլորն էլ տաք եղանակների մոտենալն զգալուց են այդպես պահում իրենց:

Է՜հ, ավելի լավ, թող որ վերջանան սառնամանիքները, բայց ափսոս, որ վերջանում են նաև մեր ձմեռային արձակուրդները:

## ՍԱԳԵՐԸ ԼՈՂԱՆՈՒՄ ԷԻՆ ՁՅԱՆ ՄԵՋ

Մի քանի օր է, ինչ բուքը դադարել է, բայց էլի սառնամանիքներ են: Բոլորս աշխատում ենք կրակը վառ պահել, սակայն ուժեղ ճարճատյունով վառվող փայտերն այսօր թշշում են, ծխում ու վատ այրվում:

— Թաց փայտերից ես բերել,— կշտամբեց մայրս ինձ,— կամ էլ կարգին կրակ վառել չես սովորել:

Ես վիրավորված նայեցի նրան՝ չոր փայտերի կույտից էի ընտրել, իսկ կրակը լավ վառելու համար պապիկը ինձ միշտ գովել է:

— Երեխան մեղք չունի,— պապը պաշտպանեց ինձ,— եղանակներն են տաքանում, դրանից է կրակը վատ վառվում, խոնավ եղանակներին ծխաքարշումը վատանում է:

Մենք հարցական նայեցինք պապին:

— Այս մի դուրս եկեք տեսեք, թե ինչպես է ծուխն անկանոն դուրս ելնում ծխնելույզից, իսկ նկատե՞լ եք, առաջ ինչպե՞ս էր բարձրանում ծուխը:

— Սյունաձև,— վրա բերեցի ես:

— Ճիշտ է,— ասաց պապիկը,— հիմա որ գնաք գյուղից դուրս, կտեսնեք, թե ինչպես է գետակի ջուրը բարձրացել և հոսում սառույցի վրայով, բոլոր նշաններն

## ԱՆՁՐԵՎԸ ԵԿԱՎ... Ի՞ՆՉ ԱՆՁՐԵՎ

**Անտառում ենք, պապիկի մոտ: Մեղուները դրսում քնած են իրենց տնակների մեջ: Իսկ մենք պապիկի տնակում, շրջապատել ենք կրակը, տաքանում ենք: Կրակի վրայով կատաղածի պես այս ու այն կողմ են սլանում մոծակների պարսերը, որոնք առանձնակի չարությամբ են հարձակվում մեզ վրա, գուցե նրա համար, որ մենք խանգարում ենք իրենց անդորրը մեր խարույկով, մեր ներկայությամբ:**

**— Էլի գժվեցին էս անիծածները,— պապը ապտակեց ինքն իրեն և հենց այնտի վրա սպանեց մոծակների հերթական խումբը,— երեխեքի բախտը չբերեց, էգուց անձրևային է լինելու:**

**— Անձրև՞,— ես զարմացա,— այնպիսի լավ երեկո է:**

**Առավոտյան ասացի.**

**— Պա՛պ, այդպես էլ չլսվեց սոխակ-**



digitised by A.R.A.R.@

ների ձայնը, իսկ ասում էիր, որ ողջ գիշեր սոխակները երգում են անտառում:

— Սոխակը պարզ, արևոտ օրվանից առաջ է երգում, բալա՛ ջան,— ասաց պապը:

Դրսում պարզ եղանակ էր և անձրևի ոչ մի հետք չէր երևում:

— Ուրեմն չես հավատո՞ւմ, որ անձրև է գալու, դե լավ, շուտ նախաճաշենք և գնանք մեղվանոց, բայց որ թրջվես, ինձանից չնեղանաս,— զգուշացրեց նա:

Աշխույժ, ժրաջան, հեռուները թռչող մեղուները այժմ միայն փեթակների շուրջն էին պտտվում:

— Պապի՛կ, մեղուները հո չե՞ն հիվանդացել,— անհանգստացա ես:

— Չէ՛, բալա՛, մեղուներն էլ են ըզգում, որ շուտով անձրև է գալու, դրա համար շատ չեն հեռանում մեղվանոցից:

— Էլի անձրև...

Պապիկն անցավ գործի, նրան շատ ձեռնտու էր մեղուների խաղաղ տրամադրությունը: Իսկ ես գնացի մոտակա մեծ մրջնանոցը, որտեղ միշտ եռում էր մըրջնային ուրախ կյանքը: Սակայն այսօր այստեղ էլ ամայություն էր, կյանքն ասես մարել էր ներսում, ես նույնիսկ մտածեցի, որ մրջյունները տեղափոխվել են իրենց բնից, սակայն պապիկը հետո ինձ ասաց, որ մրջյուններն էլ մեղուների նման ըզգում են մոտալուտ անձրևի գալը:

— Չնկատեցի՞ր, որ ծղրիդները երեկոյան այնպես ուժեղ ու միալար չէին երգում, և... ոչ էլ գորտերն էին բարձր կոկռում լճակում:

Կյանքն այսօր իր ընթացքը փոխել էր, միշտ կայտառ, ծառից ծառ, թփից թուփ թռչկոտող ճնճղուկներն անբնական կերպով փքել, ուռցրել էին իրենց փետուրները, իսկ ինձ հայտնի մի քանի բներում թռչունններն անշարժացել-քարացել էին:

Սովորականից շատ բուրավետ էր մեղվանոցի օդը՝ այնպիսի ուժգնությամբ էին բուրում մեղվանոցի շրջակայքի ծաղիկները: Պապիկն ասաց, որ դա էլ անձրևի նշան է: Ես շրջելով կանաչների մեջ զարմանքով տեսա, որ պատատուկի ծաղիկները բոլոր բույսերի վրա փակված էին:

— Այդ էլ է անձրևի նշան,— ասաց պապը:

Եվ անձրևն, իրոք, եկավ, ու զարմանալի էլ կլիներ, եթե այդքան նշաններից հետո չգար, եկավ, ի՜նչ անձրև, ի՜նչ որոտ ու ճայթյուն...

Անցյալ տարվա հոկտեմբերին Սոֆիայի «Եվրոպա» հյուրանոցը հյուրընկալորեն բացեց իր սրահների դռները մեր մայր ցամաքի ամենախորհրդավոր բնակիչների՝ մոգ-ձեռնածուների առջև:

Լուսարձակների գունագեղ հրավառության և հանդիսավոր երաժշտության հընչյունների ներքո բեմ են ելնում մի աղջիկ և երկու տղա՝ երփներանգ փայլփլուն հագուստներով: Նրանք գլուխ են տալիս, ու երաժշտությունը դադարում է: Աղջիկը կապում է իր կարմիր փողկապին երկար մետաքսե քուղ, որի երկու ծայրերից տղաները ձգում են: Այնուհետև աղջիկը խընամքով մի քանի կապ էլ է գցում փողկապին: Նրա խաղընկերները ձգում են քուղը և... փողկապի կապերն իրենք իրենց արձակվում են: Հետո տղաներից մեկը հանդիսատեսին մի հովհար է ցույց տալիս, որը ամեն թափահարումից փոխում է գույնը: Դրան հաջորդում է մի այլ համար. դատարկ գլխարկից հանկարծ դուրս են սահում երկար ժապավեններ: Եվ թվում է, թե այս երեխաների մոտ, իրոք, ամեն ինչ ստացվում է մոգական փայտիկի շարժումով:

Ընդմիջմանը ես հանդիպեցի նրանց: Բաց խարտյաշ մազերով տասներկուամյա աղջկան կոչում էին Բոնկա Ռուսինովա: Տղաներից մեկը, որն ավելի բարձրահասակ էր, Ռումեն Տրայանովը, ընդամենը ինը տարեկան էր, իսկ նրա երկչոտ տեսքով զուգընկերը՝ Անգել Ծոպովը, տասը տարեկան: Երեքն էլ Կյուսթենդիլից էին: Կանգնած էին իրենց ուսուցչի՝ ձեռնածու Պյոտր Ռուսինովի կողքին, որը Կյուսթենդիլի պիոներների տան ձեռնածուների խմբակն է ղեկավարում:

— Բոնկան իմ աղջիկն է,— ասաց Պյոտր Ռուսինովը:— Արդեն մի քանի տարի է, ինչ պարապում եմ նրա և իր երկու խաղընկերների հետ: Մեր խմբակը մեծ չէ, ընդամենը 8 երեխա են, բոլորն էլ՝ ճարպիկ, համառ և ջանասեր:

— Երևի ձեր սաներր առաջին անգամ են այսպիսի փառատոնի մասնակցում:

Երեխաները ժպտում են, իսկ նրանց դաստիարակը հպարտորեն պատմում է.

— Նրանք գեղարվեստական ինքնագործունեության հանրապետական հինգերորդ փառատոնի դափնեկիրներ են: Ստացել են նաև այնպիսի պարգևներ, ինչպես «Արծաթե պայտը» Բոտևգրադի ստուգատեսում, «Գնրկատուն» Գաբրովոյում կայացած երգիծանքի և հումորի 18-րդ փառատոնում: Շրջագայելու են Ի-



digitised by A.R.A.R.@



**ՍՏԵՖԱՆ ՄԱՏԵՎ**

տալիայում, Լեհաստանում, Հունգարիայում, Ռումինիայում...

Ես հետաքրքրվեցի, թե ինչպես են նրանց ուսման գործերը:

— Մենք երեքս էլ գերազանցիկներ ենք,— բոլորի փոխարեն շտապում է պատասխանել Բոնկան:

— Իսկ չէի՞ք բացի ձեր թեկուզ մեկ աճպարարության գաղտնիքը:

— Մեծ հաճույքով: Եկեք մեզ մոտ՝ Կյուսթենդիլ:

Հաջորդ օրը՝ նոր անակնկալ. բուրգացիներ՝ տասնմեկամյա Դանիելայի և տասնհինգամյա Նիկոլայի ելույթը: Դանիելան ցուցադրեց մի քանի ճարպիկ համարներ քարտերով, իսկ նրա եղբայրը ինչ-ինչ հրաշքներով մետաղյա օղակների մի ամբողջ շղթա շարեց օղագոտու վրա: Իսկ երբ դատարկ արկղում, մեր իսկ աչքի առջև, դարսված ձայնասկավառակները հայտնվեցին՝ մեկական վառվռուն գլխաշորի մեջ փաթաթված, հանդիսականների հիացմունքին սահման չըկար:

Այս երեխաների ղեկավարը իրենց հայրն է: Նա մեկուկես տարի առաջ է սկսել նրանց հետ պարապել: Ընդամենը մեկ ամսում երեխաներն այնպես են հըմտացել, որ արդեն ելույթներ են ունենում հանդիսականների առջև: Մասնակցել են Գաբրովոյում կայացած աճպարների հանրապետական փառատոնին, գեղարվեստական ինքնագործունեության հանրապետական ստուգատեսին, իրենց հմտությունն են ցուցադրել միջազգային երկրորդ ասամբլեայում:

Բեմում երևում է ծաղրածուն, իր հետ բերելով փայտե մեծ արկղ, որտեղից դուրս է ելնում տասնամյա Արուս Աբաջյանը, կամ, պարզապես, Արին: Ծաղրածուն ձգում է աղջկա ոտքերից ու ձեռքերից կապած լարը և աղջիկը շարժվում է խաղատիկնիկի նման: Մանկական հանրաճանոթ «Սպիտակ նապաստակ» երգի հնչյունների տակ Արին կատարում է իր ծիծաղելի աճպարարությունը: Փոքրիկ գնդիկներից մի ակնթարթում հսկայական գունդ է գոյանում: Արհեստական ծաղկեփնջից սկիզբ են առնում երկար ծաղկաշղթաներ: Համարն ավարտվելուց հետո աղջիկը վարագույրների ետևն է անցնում խաղատիկնիկի նման քայլելով:

Արին հայտնի ձեռնածու Աստորի դուստրն է: Հայրը սկսել է նրա հետ պարապել, երբ աղջիկը հազիվ երեք տարեկան էր: Չորս տարեկան էր, երբ արդեն ելույթ էր ունենում հանդիսականների առաջ, հինգ տարեկանում մասնակցել է հեռուստատեսային մանկական հաղորդմանը, իսկ 1980 թվին՝ Կառլովի Վարիում կայացած փառատոնին:

1982 թ. Լոզանում, ձեռնածուների համաշխարհային 15-րդ փառատոնում, Արին հմայեց հանդիսականներին: Նրա աճպարարության մասին սկսեցին խոսել նույնիսկ ամենանշանավոր մոգերը...

Պատանի ձեռնածուներ Բոնկան, Ռումենը, Անգելը հարազատ Կյուսթենդիլ տարան փառատոնի առաջին մրցանակը: Երկրորդը ստացավ Արին, երրորդը՝ Դանիելան ու Նիկոլայը: Բուլղարացի նշանավոր մոգ, պարոն Սենկոն, որը ժյուրիի նախագահն էր, ինձ ասաց.

— Քառասուն տարուց ի վեր ես նվիրվել եմ մեր դժվարին արվեստին: Անցյալում մեր վիճակը նախանձելի չէր: Այժմ, ամեն ինչ այլ է, դուք ինքներդ տեսնում եք... Ցանկանում եմ իմ փոքրիկ գործընկերներին մեծ հաջողություններ:



digitised by A.R.A.R.@

ՀԱՄԼԵՏ ԱՂԱԳՅՈՒԼՅԱՆ



# Ալիխանյան եղբայրներ

**Ֆիզիկոս Համլետ Աղագյուլյանը գիրք է գրել մեծահամբավ Ալիխանյան եղբայրների կյանքի և գիտական գործունեության մասին: Տպագրում ենք մի հատված այդ գրքից:**

Քսաներորդ դարի սկզբին՝ 1903 թվականի աշնանային մի օր, Ալիխանյան նորապսակ զույգը Թիֆլիսից տեղափոխվում է Գանձակ քաղաքը, որը հարյուր տարի էր, ինչ մտել էր ռուսական կայսրության մեջ և վերակոչվել Ելիզավետպոլ:

Ապագա աշխարհահռչակ ֆիզիկոսների հայրը՝ Իսահակ Աբրահամի Ալիխանյանը, աշխատանքի էր նշանակվել Ելիզավետպոլում, որպես Անդրկովկասյան երկաթգծի մեքենավար: Նա իր նորատի կնոջ՝ Աշխեն (Յուլյա) Արտեմի Սուլխանյանի հետ, որը նոր էր ավարտել Թիֆլիսի Գայանյան օրիորդաց դպրոցը, բնակություն է հաստատում հայոց վաղ միջնադարյան այդ քաղաքում:

Լուսավորչի եկեղեցու մոտ, երբեմնի «Եկեղեցական» կոչվող փողոցում, անցորդը այսօր էլ կտեսնի նրանց միահարկ տունը: Բակի փայտե ծանր դուռը, ինչպես տարիներ առաջ, այսօր էլ սիրով կբացվի այցելուի առջև և կընդունի ներս:

Բակում քչքչում է առուն: Փլված ցանկապատի մամռոտ քարեր կան այնտեղ, ծաղիկների ու սեզերի մեջ կորած մանկություն: Նրանց վերևում, նույն անծայրածիր անհունն է, և եկեղեցու գմբեթին՝ ասես հրաշքով երկնքից ցած կախված նույն խաչը:

Տուն տանող քարե աստիճաններով, դափնեվարդերի անխնամ, դալկահար թփուտները քեզ կուղեկցեն վեր:

Այս տանը՝ 1904 թվականի մարտի 5-ի



digitised by A.R.A.R.@

առավոտյան ծնվեց Իսահակ Ալիխանյանի առաջնեկը:
Հայրը նորածնին՝ իրենց նախապապի անունով կոչեց Աբրահամ:
Նախապապը՝ Աբրահամ Ալիխնյանը իրեն սերված էր համարում հայոց Բագրատունիներից: Հնակվել էր Բագրևանդ գավառի Բագավան կոչվող վայրում, որտեղ նախաքրիստոնեական ժամանակներում գտնվում էին Վահագն աստծու և Անահիտ դիցուհու հեթանոսական մեհյանները:
Ժամանակի գրեթե երեք հարյուր տարվա շառավղով, Աբրահամ նախապապը հեռու էր իր նորելուկ ծոռից:
Աբրահամը չորս տարեկան էր, երբ 1908 թվականի հունիսի 25-ին ծնվեց Իսահակ Ալիխանյանի երկրորդ զավակը: Նա լույս աշխարհ եկավ Գանձակից քիչ հեռու, Մռավ լեռների մեջ ծվարած մի գեղատեսիլ ամառանոցում, այն տանը, որտեղ ծնվել էր Ռիխարդ Զորգեն:
Մայրը նորածնին իր մեծ պապի անունով կոչեց Արտեմ:
Արտեմ պապը վաճառական էր եղել: Զբաղվել էր թանկարժեք քարերի առևտրով: Եղել էր աշխարհի շատ ու շատ երկրներում, տեսել յոթ հրաշալիքները: Եղել Չինաստանում, ինչպես և Ավստրալիայում, որտեղ հազիվ էր գլուխը փրկել վայրի ցեղերից: Նա հայոց Գողթան գավառի Նախիջևան քաղաքից էր:
Պատմում էին, որ Արտեմ պապը Վենետիկի Սուրբ Ղազար կղզում տեսել է դեռևս երիտասարդ Ղևոնդ Ալիշանին: Նաև կարևոր ծառայություններ է մատուցել ռուսաց գահին, որպեսզի ցարի օգնությամբ իր հաղթական ավարտին հասնի հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը:
Արևով լի Գանձակը իր մշտադալար այգիներով փռված էր Փոքր Կովկասի հյուսիսարևելյան փեշերին: Քոռի մեծ վտակներից՝ Գանձակ գետը, քաղաքը բաժանում էր երկու մասի, ապա կտրում անցնում էր մրգաստաններով առատ բարեբեր հովիտը: Գետը ծաղկազարդ դաշտավայրով շարունակում էր թավալվել հեռու, մինչև բոսորագույն հորիզոնի կրակե պատը:
... Մի օր, վերջալույսին՝ անձրևից հետո, զանգակատան գմբեթին երևաց ծիածանը: Եղբայրները վազեցին, վեր ելան զանգակատան աստիճաններով: Բայց երբ տեղ հասան, հրաշքը չքացել էր...
Եղբայրները ցնցված էին ու ապշահար:
Եկեղեցու քիվին թառած լույսը մի պահ դողաց, սլացավ քարեղեն գմբեթն ի վեր և բեկվեց երկնքի անհունության մեջ:
— Աբրահա՜մ, Արտե՜մ...
Լսվում էր մոր անհաբեկված կանչը:
Արևը սահեց, հանկարծ ընկավ երկնակամարից ու փշրվեց հեռավոր լեռան ծերպերին:
— Աբրահա՜մ, Արտե՜մ...
Արձագանքում էր աշխարհը՝ լի խորհրդավոր ու զարմանահրաշ առեղծվածներով:



Տարիներ անց, հայր Իսահակին աշխատանքի են նշանակում Անդրկովկասյան երկաթգծի Ալեքսանդրապոլ—Թիֆլիս տեղամասում և նա ընտանիքը տեղափոխում է Ալեքսանդրապոլ:
Ինչպես Գանձակում, այնպես էլ Ալեքսանդրապոլում, փոքրիկ Աբրահամը՝ Աբբին էր իրենց խաղերի նախաձեռնողն ու կազմակերպիչը:
Դպրոց ընդունվելու համար, Աբբին մասնավոր դասեր էր ստանում: Թվերի աշխարհը բացվեց հանկարծակի, իբրև երջանիկ պատահականություն՝ մի հայտնություն, որի գեղեցկության անբացատրելի հմայքը այլևս հանգիստ չէր տալիս երեխային:
Թվերը շունչ ու ոգի առան, դարձան շարժուն, օժտվելով համաչափության բազում խորհուրդներով:
Համաչափությունը բնության մեջ: Ահա այն առաջին հրաշքը, որ տեսավ Աբրահամը, երբ թափվում էին տերևները՝ հեռավոր աշնան ցրտաշունչ մշուշում:
Մի օր, Ախուրյան գետի ղեղին ափերից, եղբայրները տեսան չվող կարապների երամը: Ինչ-որ թախիծ ծնվեց աշնան մեջ: Խորհրդավոր, նրբազգաց հնչյու խլրտու՞մ էր դա, թե՞ ճախրանքի բնազդական կարոտ:
— Կանգնեցե՜ք, կանգնեցե՜ք...
Հիմա կճչա, կկանչի Աբրահամը հեռացող կարապներին: Բայց միայն արցունքներն են հոսում, ափսոսանքի և կորուստի արցունքներ:
Արտեմը քաշում է եղբոր թևից.
— Արդեն ուշ է, մրսում եմ, գնանք, մայրիկը սպատվիրեց շուտ տուն վերադառնալ:
Աբրահամը չէր լսում: Վերջալույսի բոցեղեն փոնին, ասես այրվում, մոխրա-



digitised by A.R.A.R.@



նում էին դեղին, ճերմակ կարապները: Նրա հրդեհված երևակայության մեջ ողջ աշխարհն էր շարժվում, իսկ կարապների երամը անշարժացել էր:

Տուն դառնալիս խորանում է թախիծը: Արտեմը դողում է ցրտից: Ցրտից սարսըռում են աստղերն ու աշխարհը...

Հնազդորեն Աբրահամը զգում էր համաշխարհային համաչափության հենքը: Համաչափ էին բարդիներն ու թափվող տերևները: Համաչափ էր ճամփեզրի եկեղեցին, նրա գմբեթին փայլատակող խաչը, աստղալից երկնքում՝ Կենդանակերպի հավերժորեն անփոփոխ թվացող դիրքը:

Բայց կարապների անշարժությո՞ւնը: Մի՞թե շարժումը համարժեք է անշարժությանը...



Մի տարի անց, հայր Իսահակին աշխատանքի են տեղափոխում Անդրկովկասյան երկաթգծի Թիֆլիս-Ալեքսանդրապոլ տեղամասը: Եվ նա ընտանիքով բնակություն է հաստատում Թիֆլիսում:

Աբբին ուսումը շարունակում է Թիֆլիսի առևտրական դպրոցում:

Նա մտերմանում է իրենց բակում ապրող Ռուբենի հետ: Ռուբենը մի քանի տարով մեծ էր Աբրահամից: Ծնվել էր արտիստական ընտանիքում: Յոթ տարեկան հասակում ծնողների հետ մեկնել էր Ֆրանսիա և սովորել Փարիզի Մոնդենի լիցեյում: Նրա ծնողները բարեկամական սերտ կապերի մեջ էին ժամանակի հայ և այլազգի խոշորագույն արվեստագետների հետ: Մայրը՝ Վերժինե Մամուլյանը, Թիֆլիսի հայկական դրամատիկական ընկերության նախագահն էր:

Ալիխանյան եղբայրները Ռուբենենց տանը տեսան Հովհաննես Թումանյանին, Ավետիք Իսահակյանին, Միրանուշին, Վահրամ Փափազյանին և արվեստի նշանավոր այլ գործիչների: Հենց այստեղ էլ հարստացան գեղեցիկի նրանց ըմբռնումները:



Ռուբենը մանկուց էր կապվել թատրոնի հետ և արտիստական հակումներ ուներ: Քուռ գետի ափին՝ հայոց հինավուրց եկեղեցու մոտ, նա կազմակերպում էր խաղեր: Երբ նա իր ընկերներին պատմում էր «Արևի խաղի» իմաստը, բոցավառվում էին լեռների կատարները, օդը լցվում էր դաշտային կանաչի խենթացնող բույրով: Արքենի մարդիկ թևավոր



digitised by A.R.A.R.@

զամբիկներով թռչում, սուրում էին ծովից երկինք ելնող արևին ընդառաջ, դրախտային Երկիրը բերելու ուժի և իմաստության աստղային ափիշը...

Արևածագ...

Ռուբենն իր տարերքի մեջ է: «Արևի խաղը» ստացվում էր իր պատկերացրածի պես: Հովիտը թնդում էր երեխաների աղմուկ-աղաղակից: Կռիվ էր՝ «իսկական ճակատամարտ», և արդեն ջախջախվում էին վայրենի, ավազակ ցեղերը, երբ ոտքորընդոստ, խելագար մի ճիչ սասանում է երեխաներին: Նրանք սթափվում են և նայում չորս-բոլորը:

Վերևում՝ բլրի վրա, մայիսյան ծաղիկների ու կանաչների մեջ, գավազանը ձեռքին կանգնած էր խենթ քահանան: Նա խաչակնքում էր՝ հայացքը հառած փիրուզե երկնքին:

— Ո՛վ ամենակարող, ողորմա այս փոքրիկ ամբարիշտներին, չէ՞ որ սառնք քո մեծ հոտի անմիտ գառնուկներն են: Տեր, լույսդ առինքնող տուր սրանց, լույսդ՝ հոգու՝ այս մոլորյալներին:

Դանդաղ, ինչպես տեսիլք, քահանան սահեց ցած:

Երբ հասավ հովիտ, կանգ առավ: Հայացքը հառեց սարսափից քար կտրած երեխաներին և մատները՝ ճառագայթների նման, ուղղեց երկինք:

— Կիլիկիո ծովեզերքից մինչև հոս կրցա փախչել: Հոսկե անդին հիշողությանն...

Նա մի պահ նվաղեց, թվաց մեռավ հենց կանգնած տեղը: Բայց ինչ-որ զորավոր ուժից կյանք առնելով, հայացքը հառեց երկինք և ցասումով ավելացրեց.

— Հոսկե անդին, թող Տերը զիս ների... թու՜րք, թու՜րք...

Այդ վերջին բառի հետ նա շարունակեց սահել առաջ:

Երեխաները ետ-ետ էին քաշվում: Միայն Աբրահամը չշարժվեց տեղից: Քահանան կանգ առավ նրա դիմաց:

— Անու՞նդ, անունդ ի՞նչ է, որդյա՛կս:

— Աբրահամ:

— Աբրահա՞մ,— շշնջաց քահանան:— Դուն Աստծո առաքյա՞լն ես:

Աբրահամը լուռ էր:

— Ինչո՞ւ իրարու կհոշոտեք, ի՞նչ ունիք կիսելու:

— Մենք «Արևի խաղն» ենք խաղում, հա՛յր սուրբ,— պատասխանեց Աբրահամը:

Քահանան ցնցվեց...

— «Արևի խա՞ղ»... Հայոց արևը խավարեց, որդյա՛կս,— ողբաձայն ասաց նա, ապա շոյելով Աբրահամի գանգուրները, շարունակեց.

— Բայց դուն կհասնես արևին, Աբրահա՛մ:

Ռուբենն ու Արտեմը և բոլոր երեխաները սրտապնդվեցին: Հետաքրքրությունից բորբոքված, նրանք դանդաղ առաջ էին գալիս՝ դեպի քահանան ու Աբրահամը:

— Եկե՛ք, եկեք հո՛ս, գառնուկնե՜րս,— քահանան քաջալերեց երեխաներին և խաչակնքելով նրանց, սաղմոս մրմնջաց.

— Ո՛վ Տեր, ինչո՞ւ մեզ բոլորովին մերժեցիր, և բարկությունդ կմխա քու արոտիդ ոչխարներու վրա...

Թեպետ երեխաները ոչինչ չհասկացան սաղմոսից, բայց ակնապիշ տարակուսանքով հետևում էին քահանային:

Քահանան շրջվեց: Երեխաների շփոթված հայացքների ուղեկցությամբ սահեց բլրի գագաթն ի վեր և անէացավ եկեղեցու կամարների տակ:



Վրաստանում իշխանությունն անցել էր մենշևիկների ձեռքը: Նրանց հետապնդումներից հալածված Իսահակ Ալիխանյանը ընտանիքով փախավ Ալեքսանդրապոլ: Ուսումը շարունակելու համար Աբրահամը մնաց Թիֆլիսում՝ մորաքրոջ տանը:

Այդ դաժան տարիներին, պատանի Արտեմը հորն օգնում էր Կարսի և Արևմտյան Հայաստանի այլ նահանգների ջարդերից դեպի Կարս փախած հայերին Ալեքսանդրապոլ տեղափոխել: Երբեմն Արտեմը հենց ինքն էր գնդացրից կրակ բացում գնացքը պաշարող թուրքերի վրա կամ վարում էր շոգեմեքենան, երբ թշնամու գնդակը վիրավորում էր հորը:

Երբ Հայաստանում բռնկվեց Մայիսյան ապստամբությունը, Իսահակ Ալիխանյանը Ալեքսանդրապոլի բոլշևիկյան զրահագնացքի մեքենավարն էր: Մայիսյան ապստամբության բոցերի մեջ էր նաև Արտեմը: Ապստամբության ճնշումից հետո, հայր և որդի օգնեցին ապստամբության ղեկավարներից մեկին՝ բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ Տեր-Ստեփանովին, Ալեքսանդրապոլից անցնելու Թիֆլիս:

(շարունակելի)



digitised by A.R.A.R.@

# Որտե՞ղ եք, ասպետնե՛ր

Տղաներից ասպետություն պահանջող նամակներ խմբագրությունը շատ է ստանում: Նամակները հաճախ մեղադրանք-բողոքների բնույթ ունեն: Աղջիկները քննադատում են, հուսալով, սպասելով, երազելով, որ համադասարանցիները, բակի, ինչպես և դրսի՝ ծանոթ ու անծանոթ տղաները, ձեռք կբերեն բնավորության ասպետական ցանկալի գծերը: Անցյալ տարի ամսագրում տպագրվեց Սուսաննա Աշրաֆյանի նամակը, ուր կային այսպիսի տողեր. «Ասպետություն չենք պահանջում, այլ միայն տարրական քաղաքավարություն»: Այսինքն՝ արդեն չենք էլ սպասում, հույս էլ չունենք, թե ասպետ տղաների կհանդիպենք:

№ 92 դպրոցի աշակերտներ Աիդան և Սեդան վերջերս ուղարկած նամակում գրում են. «Տղաները կոպտում, վիրավորում են մեզ, նույնիսկ վիճում են ուսուցչուհիների հետ: Նրանց անունները չենք գրում, որովհետև... վախենում ենք»: Ահա մեկ ուրիշ նամակ. «Եթե չենք հուշում դասի ժամանակ, կարող են մեզ վրա նույնիսկ ձեռք բարձրացնել»: Նմանօրինակ նամակներ էլի կան: Մի աղջիկ, որ խնդրեց անունը չտալ, պատմում է. «Եղբայրս յոթերորդ դասարանցի է: Նա տանը շատ կիրթ է իրեն պահում, միշտ քնքշորեն է վերաբերվում ինձ հետ, մայրիկին օգնում է տնային գործերում: Իսկ դպրոցում դառնում է անճանաչելի: Ես շատ եմ կարմրել նրա պատճառով»:



Ուրեմն ի՞նչն է պատճառը: Քրոջը, մայրիկին սիրում են, իսկ համադասարանցիներին՝ ո՞չ:

Ես ճանաչում եմ մի թուլակազմ տղայի, որին համադասարանցիները «Սուսիկ-փուսիկ» էին անվանում: Աղջիկները նույնիսկ որոշ հեգնանքով էին նրա մասին խոսում: Սակայն մի օր, ոչնչով աչքի չընկնող այդ տղան նրանց պաշտպանելիս կոտրեց թևը: «Սովորական դեպք է, գրքերում շատ ենք կարդացել», — երևի կմտածեք դուք: Բայց կյանքում քիչ են այդպիսի տղաները: «Պիոներսկայա պրավդան» ամիսներ առաջ գրեց մի տղայի մասին , որը դրուժինայի դրոշը պաշտպանել էր, չէր տվել այն խլել ցանկացողներին: Չնայած դժվար էր եղել այդ անելը, մեկը դիմադրել էր շատերին: Գիտեմ Հովիկ Վարդանյան անուն-ազգանունով մի տղայի մասին, որը ակնթարթորեն նետվել էր յիճր՝ խեղդվող փոքրիկին փրկելու համար: Եվ ինքն էր խեղդվել:

7-րդ դասարանցիներ Ջեմման և Վարդուշը նամակում խնդրում են. «Գրեք ասպետության մասին հոդված ,որ մեր դասարանի տղաները դաստիարակվեն»: Դժվար թե մեկ հոդվածով տղաները ամբողջովին փոխվեն: Բայց, հավանաբար, ասպետության հատիկ նրանց մեջ էլ ծիլ կտա:

Նամակագիրները հիմնականում աղջիկներ են: Իսկ ի՞նչ են մտածում տղաները: Այն տղաները, որ երազում են նմանվել կինոնկարների խիզախ պարտիզաններին, իրենց հերոս տարեկիցներին, և որոնք կարող են... ձեռք բարձրացնել աղջկա վրա: Արձագանքե՛ք, ասպետնե՛ր, սպասում ենք ձեր նամակներին:



digitised by A.R.A.R.@




Շատ սովորական է մեր ընտանիքը: Պարզ, գյուղական ընտանիք: Մի ընտանիք, որտեղ թևածում է երգն ու երաժշտությունը, խինդն ու ծիծաղը: Գլխավորն այն է, որ հայրս հիանալի է արտասանում: Տատիկս երգում է հին երգեր: Մայրս ունի քաղցր ձայն և երբ մեր գերդաստանով հավաքվում ենք մի հարկի տակ, զիլ հնչում է մորս երգը: Ես նույնպես երգում եմ թե՛ գուսանական և թե՛ էստրադային երգեր: Եղբայրս երգում է էստրադային երգեր և քիչ-միչ նվագում է կիթառի վրա: Ափսոս, որ մեր ընտանիքում ձայն չունի միայն միջնեկ քույրս: Երգից բացի, բոլորս էլ սիրում ենք ֆուտբոլը:

Նույնիսկ 70-ամյա տատիկս է սիրում և մեզ հետ դիտում է բոլոր խաղերը:

Տատիս աչքին հատկապես բարձր է Խորեն Հովհաննիսյանը: Երբ գոլ է խփում, հետևում է տատիս խոսքը.

— Բախտ ունի էի՜: Աստված տա ամեն խաղին տասը անդամ խփի:

Միմյանց հանդեպ միշտ սիրով ենք եղել և թող միշտ էլ սիրով մնանք: Գարունն է եկել և սկսվել են հողի հետ կապված աշխատանքները: Մշակում ենք մեր այգին և հողամասը: Եվ երանությամբ ենք սպասում այն օրվան, երբ կերևա մեր քրտնաջան աշխատանքի արդյունքը:

ԱՆԱՀԻՏ ԱՆՏՈՆՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջան,
գ. Նալբանդյան, 9-րդ դասարան

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

Մի անգամ մեր դասարանցի մի աղջիկ ասաց, որ դասը չի հասկացել և որպեսզի «երկու» չստանա, խնդրեց, որ մենք էլ ասենք նույնը ուսուցչուհուն: Ուսուցչուհին հարցրեց երեսունմեկ աշակերտի և ստացավ բոլորից նույն պատասխանը. «Դասս չեմ հասկացել»: Բոլորի օրագրերում հայտնվեցին «երկու» գնահատականներ: Վերջում հարցրեց այդ աղջկան: Դասը գերազանց պատմելուց հետո, «հինգ» ստացած, ուրախ նստեց տեղը: Ամբողջ դասարանը ապշած մնաց: Որոշեցինք չխոսել նրա հետ: Նա գնաց և ծնողներին պատմեց ոչ այնպես, ինչպես եղել էր:

Մեր դասարանի Ռուզաննայի ծննդյան օրն էր: Գրնում էինք մեր դասղեկի հետ շնորհավորելու: Ճանապարհին հանդիպեցինք այդ աղջկա մորը: Նա այնպիսի վատ խոսքեր ասաց մեր դասարանի մասին, որ դասղեկը հուզմունքից լաց եղավ: Այդ օրը չգնացինք շնորհավորելու Ռուզաննային և նվերները դպրոցում նվիրեցինք:

Արդյո՞ք այդ աղջիկը մեզ համար ընկերուհի է:

ՎԱՐԴՈՒՀԻ ՍՄԲԱՏՅԱՆ
Երևան, № 56 դպրոց,
6-րդ դասարան

## ԺՊԻՏՆԵՐ

Վերջերս մեր գրականության ուսուցիչը ծիծաղելի մի բան պատմեց: Պատմեմ ձեզ, դուք էլ ծիծաղեք:

Մանկավարժական ինստիտուտն ավարտելուց հետո,— ասաց նա,— ընկերոջս՝ Արսենին աշխատանքի ուղարկեցին մեր հեռավոր գյուղերից մեկը:

Մի օր նա երեխաներին հանձնարարում է Հովհ. Թումանյանի «Շունն ու կատուն» կարդալ: Հաջորդ օրը նրանք դասի են գալիս, պարզվում է, որ ոչ մեկը չի կարդացել: Ուսուցիչը կանգնեցնում է մի տղայի ու հարցնում.

— Ո՞վ է գրել «Շունն ու կատուն»:

— Ես չեմ գրել,— լաց է լինում աշակերտը:

Տղան գնում է հորը պատմում: Հայրը գալիս է ուսուցչի մոտ ու ասում.

— Բա իմ երեխայի վրայից երևու՞մ է, որ նա էդ բանի տերն է:

Արսենը հանդիպում է իր ընկերոջը՝ Գևորգին, որը միլիցիոներ էր և պատմում է այս դեպքը: Իսկ Գևորգը հարցնում է.

— Արսեն, բա դու ու՞մ վրա ես կասկածում:

ՄԵԼԱԴԱ ԲԱԴԻՐՅԱՆ
Գորիս, № 5 դպրոց,
9-րդ դաս.



digitised by A.R.A.R.@

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

## ՁՆՀԱԼԻՑ ՀԵՏՈ

Ձնհալից հետո
Կանաչ գորգերն են հայտնվում փութով,
Ջկները ուրախ վազում են գետով։
Ձնհալից հետո
Ծառն է բողբոջում, սերմն է ծիլ տալիս
Եվ հողից վեր են ձգվում կարոտով։
Ձնհալից հետո սունկերն են աճում
Եվ առվակներն են զվարթ կարկաչում,
Իսկ հետո, հետո
Դաշտը լցվում է ծաղիկ ու խոտով,
Ձնհալից հետո
Մայր բնությունն է քնից արթնանում,
Եվ գոլորշի է հողից բարձրանում,
Քարերն են ցոլում և արագ-արագ
Ձորեր ու այգի, հովիտ ու պուրակ
Գարնան գույներով զուգվում են հերթով։

Ձնհալ է, շուտով
Կանաչ գորգերը կերևան փութով,
Իսկ ձկներն ուրախ կվազեն գետով։

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

## ԵՍ ՀԻՇՈՒՄ ԵՄ ԱՄԱՌՆ ԱՆՑԱԾ...

Մայրի՛կ, լսի՛ր, թռչունների երգը հիմա
Գույնը ունի կապույտ ծովի,
Իսկ սոսափը բարդիների,
Տես, մերթ ողջույն և մերթ կանչ է
Դառնում քամու անտես թևին։

Մայրիկ, օրը տաք է այնքան,
Ես չեմ մրսում իմ այս բարա՜կ, բարա՜կ
շորով,
Ես հիշում եմ ամառն անցած,
Երբ ես ծովին
Ծովն էլ ինձ էր սիրահարված։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՆՄԱՆ ԵՆ՝ ՄԻԱՄԻՏ ՈՒ ԱՆՕԳՆԱԿԱՆ



Մեր բակում լավ տղաներ են ապրում։ Նրանք տեղ են պատրաստել և հավաքում, խնամում են կատուների ու շների լքված ձագերին։ Այդ լքված ձագերն էլ այնքան շատ են՝ տարբեր ցեղի, տարբեր հասակի, տարբեր գույների։ Թափառում են փողոցներում, բակերում, մարդկանց ոտքերին են փաթաթվում, խնդրում, աղաչում, որ իրենց սիրեն, փաղաքշեն։

Իհարկե, այս ամենը լավ է, բոլորը ժպտալով են նայում տղաներին, նույնիսկ ոմանք փող են առաջարկում, որպեսզի նրանք իրենց կենդանիների համար միս ու կաթ գնեն։ Իսկ տղաները հրաժարվում են, պաղպաղակի կամ կինո գնալու փողն են ծախսում դրա վրա։

Բայց մի օր ահա թե ինչ տեղի ունեցավ։ Լքված երկհարկանի տան տանիքում կատվի մի ձագ հայտնվեց։ Ո՞վ էր գցել այնտեղ, ե՞րբ, ոչ ոք չէր իմանում։ Կատվի ձագն ինքն իրեն չէր կարող գնալ։ Պարզ է, որ մեկը մտածված կերպով էր արել այդ։ Գուցե երեխաներին հակառակվելու համար, գուցե և ուղղակի հաճույքի։ Կան, չէ՞, այնպիսիները, որ ուրիշների տառապանքից հաճույք են ընտանում։ Դրանք չար մարդիկ են, դաստիարակություն չստացած։

Կատվի ձագը երեք օր անընդհատ նըվում էր։ Երեխայի նման լաց էր լինում։ Անտանելի շոգից ու քաղցից նվաղելով, ձայնը գնալով թուլանում էր։ Անցորդները կանգ էին առնում, մի պահ ականջ դնում, գլուխներն օրորում, ապա անցնում։ Դա ուղիղ մեր շենքի դիմաց էր։ Մեր շենքի մարդիկ չէին քնում, դուրս էին նայում, ոմանք խղճում էին, ոմանք ջղայնությունից շրխկացնելով փակում էին պատուհանները, բայց ոչ ոք չէր մտածում օգնելու մասին։ Գնում էին աշխատանքի, վերադառնում, նորից լսում կատվի ձագի աղաչական մլավոցն ու նայում լքված շենքի տանիքին, որտեղից լսվում էր ձայնը։

Մի քանի անգամ տղայիս հետ փորձ արեցինք բարձրանալ տանիք, բայց շենքն այնքան հին ու խարխլված էր, որ հնարավոր չէր առաջ գնալ՝ տանիքը կըփլվեր։ Իսկ կատվի ձագն էլ վախեցած հեռու էր փախչում։

Երրորդ օրն էր արդեն։ Նա աղեկտուր մլավոցով օգնության էր կանչում, այնպես էր աղաչում, որ ոչ ոք չէր կարողանում անտարբեր անցնել։

Լքված շենքի մոտ բազմություն էր հավաքվել։ Դատողություններ էին անում, տարբեր ձևեր առաջարկում, դատապարտում այդտեղ գցողին։ Մի քանիսն առաջարկում էին նույնիսկ հրշեջներին կանչել։ Եվ ահա այդ ժամանակ փոքրիկ Արմենը վճռականորեն առաջ անցավ ու մագլցելով խարխլված աստիճաններով, բարձրացավ տանիք։ Բոլորս շունչներս պահած նրան էինք հետևում։ Ամեն րոպե տանիքը կարող էր փլվել, կարող էր ոտքի տակ մի անցք բացվել և նա կգլորվեր ցած։ Իսկ կատուն փախչում էր նրանից, լարում վերջին ուժերը, հեռանում։ Նա արդեն վախենում էր մարդկանցից։

Վերջապես հաջողվեց բռնել։ Կատվի ձագը սարսափից գալարվում էր, կծում, ճանկռում տղայի ձեռքերը, բայց նա բաց չէր թողնում։ Զգուշորեն իջավ տանիքից։ Մենք շտապեցինք օգնության՝ նրան ձեռքներիս վրա ցած բերեցինք։ Իսկ նա ցավից և ուրախությունից լաց էր լինում՝ ձեռքերն արյունոտվել էին։

Բոլորը շրջապատեցին կատվի ձագին։ Մեկը վազեց տանից կաթ բերեց, մյուսը՝ երշիկ։ Բոլորն հուզված խոսում են, ծիծաղելով նայում, թե ինչպես է կատվի ձագը լկում կաթը, և ուրախ են։ Ուրախ են փրկված կատվի ձագի համար, ուրախ են փոքրիկ տղայի համար, ուրախ են իրենց համար։

— Կենդանիները երեխաների նման են՝ միամիտ, շուտ վստահող ու անօգնական,— ասում է մեկը, կրկնում են ուրիշները։— Նրանց օգնել, նշանակում է օգնել, որ բարին հաղթի։



digitised by A.R.A.R.@



## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

# ԾԻԾԵՌՆԱՎԱՆՔ

Գորիսի շրջանի Խնածախ գյուղից մի քանի կիլոմետր հեռավորության վրա է գտնվում Ծիծեռնավանքը:

Ահա թե ավանդությունն ինչ է պատմում այս եկեղեցու անվան մասին: Եղել է, իբրև, մի հայկական գյուղ, որ ավանդական ծեսի ժամանակ կերել է հատուկ այդ օրվա համար եփված կերակուրը՝ մի հսկայական կաթսայից: Եվ, ահա, մի անգամ կաթսայի մեջ մի թունավոր օձ է ընկնում: Ոչ ոք դա չի նկատում, բացի ծիծեռնակից, որն անընդհատ պտտվում է կաթսայի վերևում ու չի թողնում, որ մարդիկ ուտեն: Եվ երբ մեկին, այնուա-



digitised by A.R.A.R.@

մենայնիվ հաջողվում է բաժին առնել շիլայից, նա չի էլ հասցնում գդալը բերանը տանել, նույն պահին ծիծեռնակն իրեն նետում է կաթսայի մեջ: Մարդիկ զզվանքով թափում են շիլան և երբ տեսնում են օձին, հասկանում են, որ ծիծեռնակը զոհվեց հանուն իրենց: Նրանք թաղում են ծիծեռնակին ու վրան կառուցում մի վանք, անունն էլ դնում Ծիծեռնավանք:

Մեկ ուրիշ ավանդություն էլ կա, որի համաձայն այստեղ է թաղված Պետրոս առաքյալի ճկույթը (ծիծեռնը):

Առաջին ուժեղ տպավորությունը դիտողը ստանում է եկեղեցու դիրքից՝ չափազանց կարևոր հանգամանք ճարտարապետական հուշարձանների գեղագիտական ընկալման համար:

Փառահեղ դիրք ունի Ծիծեռնավանքը: Նա իր հզոր, առնական կեցվածքով իշխում է շրջապատի վրա: Կանգնած է ոչ այնքան բարձր, բայց իր ուրվանկարով շատ գեղեցիկ բարձունքի վրա, որն ասես բնական պատվանդան լինի եկեղեցու համար: Իսկ եկեղեցին դիտվում է իբրև բարձունքի բնական շարունակությունը: Այսպես, երկու ձորերի միացման տեղում, լավ արտահայտված մի հրվանդանի վրա բազմել է Ծիծեռնավանքը:

Հավերժական թարմություն է բուրում սպիտակ սրբատաշ քարից շինված այս եկեղեցին: Նա հատկապես տպավորիչ է գարնան ամիսներին, երբ շուրջն ամենուրեք կանաչ է:

Եկեղեցին շրջապատված է կիսավեր քարե պարսպով, որն իր մուգ գույնով հակադրվում է եկեղեցու սպիտակին:

Իջնում ենք ձորակը, անցնում ենք առուն ու վերադառնում մեր եկած ճանապարհով: Ծաղկած խնձորենիների արանքից մի վերջին անգամ տեսնում ենք Ծիծեռնավանքը: Ու մեզ թվում է, թե ամեն տարի գարնանը Ծիծեռնավանքն էլ է ծաղկում այս խնձորենիների նման:

Ծիծեռնավանքից ոչ հեռու ընկած է անչափ խորհրդավոր ու բազմադեմ Խոր Ձորը: Սա սկսվում է իբրև մի փոքրիկ ձորակ, միանգամայն մարդկային (բնական) մասշտաբայնությամբ: Այդպես կոչվում է այն մասշտաբը, որի դեպքում դիտվող առարկայի չափերի նկատմամբ մարդն իրեն ճնշված չի զգում: Սրա հիշտ հակառակն է եգիպտական բուրգերի օրինակը. այնտեղ մենք գործ ունենք գերբնական չափերի հետ: Այս և նախորդ օրինակը մեզ տալիս են մասշտաբայնության հասկացողություն, այն տարբերությամբ, որ առաջին դեպքում դիտվող առարկան բնության ստեղծածն է, իսկ երկրորդ դեպքում՝ մարդու:

Խոր Ձորում այնքան առատ է հիրիկ կոչված ծաղիկը, որ թվում է, թե այն անում է խոտի փոխարեն, ու գարնան ամիսներին ձորը ներկվում է յասամանի վառ գույնով: Շրջանցելով մեծ-մեծ քարերը, ձորով հոսում է մի փոքրիկ առվակ: Գնալով ձորը լայնանում է, երկու կողմի ուղղահայաց պատերի վրա ի հայտ են գալիս ձվաձև անցքեր: Բոլոր անցքերի ներքևի մասում հորիզոնական դիրքով գերաններ են շարված: Իսկ անցքերի ուղղությամբ դեպի ներքև ոտնահետքեր հիշեցնող փոսեր կան: Այդ անցքերը ժայռափոր բնակավայրերի մուտքեր են՝ գետնից 7—9 մ. բարձրության վրա: Մարդիկ այնտեղ հասել են, հավանաբար, գերաններից կախված ճոպանների միջոցով:

Ձորը գնալով նաև խորանում է ու մարդու չափերի նկատմամբ կամաց-կամաց դառնում է անհամատեղելի: Լեռնային կածանը տանում է դեպի վեր ու ձորին նայելն արդեն սարսափելի է:

Ձորը կտրուկ շրջադարձ է անում ու առջևում պարզ գծագրվում է մի վիթխարի թամբ, որն ընկած է երկու բարձր ժայռերի արանքում: Թամբից ցած հսկա քարանձավներ են՝ զարմանալիորեն ողորկ ելուստներով: Այստեղ կա ժայռափոր եկեղեցի, որի մուտքը չեք նկատի, եթե ուղեկցող չունենաք, որովհետև այդ մուտք կոչվածը մի ուղղանկյուն անցք է, որի նմաններն այստեղ շատ կան: Մատնում է միայն քարի մի քանի շարք պատը, որով ամրացրել են մուտքը: Ներս մտնելուց քիչ անց, ձեր աչքերը վարժվում են մթին ու դուք տեսնում եք ժայռափոր եկեղեցին: Երկու զույգ փոխադարձաբար ուղղահայաց կամարներ հենվում են կլոր կիսասյուների վրա: Ահա ողջ ինտերիերը: Ու մեկ էլ գետնին ընկած մի քառակուսի կտրվածքի սյուն, վրան փորագրված երկու խաչով:

Ինտերիերի մշակմամբ սա չափազանց պարզունակ է, եթե, օրինակ, համեմատելու լինենք Գեղարդի ժայռափորի հետ, բայց միևնույնն է, սա իր տեղն ունի ժայռափոր կառուցվածքների շարքում:

ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ
ճարտարապետ



digitised by A.R.A.R.@

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




(Տես՛ել է հոկտ. 10-ից նոյ. 8-ը)

Հայոց տոմարի երրորդ ամիսն է, հերթականությամբ համընկնում է հուլյան տոմարի մարտ ամսին։ Ըստ Անանիա Շիրակացու, Սահմին նույնպես Հայկի դուստրերից մեկի անունն էր։ Վանական Վարդապետը (XIII դար) Սահմին կապում է սահմանել բառի հետ։ Համաշխարհային տոմարի պատմությունից հայտնի է, որ ժողովուրդների մեծ մասը ամսվա անունը դրել է ելնելով իր կենցաղից, ապրելակերպից, տարվա այդ եղանակին կատարվող աշխատանքներից ու այլ երևույթներից։ Վանական Վարդապետը գտնում է, որ այդ ամսին մարդիկ սահմանում, նախատեսում էին տները նորոգել և կատարել ձմռանը նախապատրաստվելու և նրման այլ գործեր։ Ձմռանը նախապատրաստվելու այս սահմանը մինչև վերջերս էլ ժողովուրդը պահպանել է։ Օրինակ, Հայաստանի լեռնային գյուղերում մինչև հիմա էլ հոկտեմբեր-նոյեմբեր ամսին են թխում «ձմեռվա հացը», որպեսզի «ձմռնանահան անի», այսինքն՝ բավարարի մինչև

---

Մի անգամ Ալբերտ Էյնշտեյնին հարցրեցին, թե ինչու չմասնակցեց հարաբերականության ընդհանուր տեսությանը նվիրված ամենահամառոտ և ամենահասկանալի ռեֆերատի մրցանակաբաշխությանը։

Գիտնականը պատասխանեց.

— Չարլի Չապլինի քայլվածքը ընդօրինակողների մրցանակաբաշխությունում Չապլինը առաջին տեղը գրավողներից չէր։

Վերջերս Տոկիոյի քիմիկոսները ստեղծել են մի թանաք, որը 24 ժամ հետո գունաթափվում է, և թուղթը բոլորովին մաքրվում է։ Այդպիսի թանաքի կիրառումը, իհարկե, տնտեսում է թուղթը, բայց ամեն անգամ հարկ է լինում մտածել՝ վաղը պետք չի՞ գա արդյոք այն գրածը, որն այսօր երեկոյան անհետանալու է։ Հավանաբար այդ է պատճառը, որ նոր թանաքը առայժմ օգտագործվում է ոչ թե կենցաղում, այլ արդյունաբերության մեջ, որտեղ մետաղե կամ բետոնե դետալների վրա ժամանակավոր պիտակ են դնում։

Խոտե գորգեր են սկսել արտադրել Հունգարիայում։ Տեքստիլային մնացորդներից պատրաստված գործվածքի մեջ ցանում են խոտի սերմեր և սնուցող նյութեր։ Բավական է այդպիսի գորգը փռել, ջրել, և մի քանի օրից փարթամ խոտ կանի։ Ընդ որում, գործվածքը փտում է և դառնում սնունդ բույսերի համար։

Այդպիսի «խոտե գորգերը» նախատեսված են ամրացնելու զառիվայրերը, պատնեշները, ճամփեզրերը, ինչպես նաև ըզբոսայգիներում և մարզահրապարակներում սիզամարգեր ստեղծելու համար։

Մարդն արթնացել է գիշերը և ուզում է իմանալ՝ ժամը քանի՞սն է։ Մի՞թե դա խնդիր է։ Վառում ես լույսը և նայում ժամացույցին։ Բայց ԳՖՀ-ի ժամացույցի գործարաններից մեկն առաջարկում է ավելի հարմար լուծում։ Այստեղ սկսվել է սեղանի՝ անդրադարձվող էլեկտրոնային ժամացույցների թողարկումը։ Սեղմում ես կոճակը և առաստաղին, պատին կամ ուղղակի թղթի մի մեծ թերթի վրա անդրադառնում են խոշորացված թվեր, որոնք ցույց են տալիս, թե ժամը քանիսն է։

ԱՄՆ-ում տրվել է արտոնագիր խոսող տիկնիկի համար, որը պետք է օգնի երեխաներին՝ ուղղագրություն սովորելիս։ Տիկնիկը հարց է տալիս, որոնց եթե ճիշտ պատասխան է տրվում, տիկնիկը խրախուսում է՝ «լավ է, կեցցես»։



digitised by A.R.A.R.@

գարում:

Լեզվաբան Ստ. Մալխասյանի կարծիքով Սահմի նշանակում է «սերմանց ամիս», այսինքն՝ աշնանացան սերմը ցանելու ամիս: Այս բացատրությունը նույնպես ցույց է տալիս, որ ամսանունների ծագումը սերտ կապ ունի տարվա եղանակների հետ:

Հին հայերը այս ամսվա 8-ին նշում էին Վահագն աստծու տոնը: 10-րդ դարի վերջերից սկսած՝ կամաց-կամաց հայոց տոմարի ամսանունները գործածությունից դուրս են եկել՝ տեղը զիջելով ներկայիս հռոմեական ամսանուններին:

Համաշխարհային տոմարագիտության և տիեզերագիտության նվաճումներին ուշի ուշով հետևող հայ տոմարագետ-իմաստասերներ Մովսես Եղվարդեցին (VI դար), Անանիա Շիրակացին (VII դ.) Հովհաննես Իմաստասերը (XII դ.), Ազարիա Ջուղայեցին (XVII դ.), Սիմեոն Երևանցին (XVIII դ.) և ուրիշներ, միշտ բարեփոխել են մեր տոմարը՝ ձգտելով այն համահունչյուն դարձնել ժամանակի պահանջներին:

Պահելով սեփական տոմարի ավանդությունները ու ամսանունները, նրանք միաժամանակ մեր տոմարը բարեփոխել և համապատասխանեցրել են գիտության վերջին նվաճումներին: Օրինակ՝ 1582 թ. ընդունված նոր տոմարը շատ երկրներ ընդունեցին հարյուրամյակներ անց: Մինչդեռ հայերը արդեն 1584 թվին, այսինքն՝ նոր տոմարն ընդունելուց 2 տարի հետո, Վենետիկում թարգմանեցին ու հրատարակեցին նոր տոմարի մասին եվրոպացի գիտնականների աշխատությունը, որտեղ գիտության վերջին նվաճումների հիման վրա ապացուցվում էր նոր տոմարին անցնելու անհրաժեշտությունը: Այդ գիրքը կոչվում էր «Գրիգորյան հավիտենական տոմար...» Թարգմանիչն ու հրատարակիչն էր ժամանակի պայծառ մտածողներից մեկը՝ Հովհաննես Տերզնեցին:

ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

---




Սարդից բացի հայտնի են կենդանի ջերմաչափի դեր կատարող մոտ 600 կենդանի: Օրինակ, ծղրիդները շատ զգայուն են օդի ջերմաստիճանի փոփոխության նկատմամբ:

● Գերմանացի միջատաբան Շկաաֆը ողջ կյանքում ուսումնասիրելով միջատներին, պարզել է, որ եթե հաշվենք, թե 14 վայրկյանի ընթացքում քանի անգամ է ճռռում ծղրիդը և դրան ավելացնենք 40, ապա 10 դեպքերից իննում ճշգրիտ կորոշենք օդի ջերմաստիճանը ըստ Ֆարենհայտի: Այս օրինաչափությունը այնքան հաստատուն էր, որ հետագայում նույնիսկ օդի ջերմաստիճանի որոշման բանաձև դուրս բերվեց՝ ըստ տարբեր տեսակի ծղրիդների և մի տեսակի մորեխի երգեցողության:

● Ամերիկացի գյուտարար Ռ. Լունդգրենը ստեղծել է էներգետիկ գորգ, որը էլեկտրաէներգիա է արտադրում այն պահին, երբ նրա վրայով քայլում են: 50 երեխա միջանցքում վազելով, կարող են արտադրել 100 վտ էլեկտրաէներգիա, իսկ մի քայլը բավական է, որ էլեկտրական լամպը վառվի մի ամբողջ վայրկյան,— ասում է գյուտարարը:



digitised by A.R.A.R.@

# «ԻՆՉ Է * ՈՎ Է»





## ՄԱՆԿԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԸ











Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հանրագիտարանը նման չէ դասագրքի, ոչ էլ սովորական գիրք է, որ կարդում ես սկզբից մինչև վերջ, բաց չթողնելով ոչ մի էջը: Հանրագիտարանը կարելի է համարել մի մեծ հարցարան՝ պատրաստի պատասխաններով: Հարցերի շարանն ու նրանց պատասխանները դասավորված են այբբենական կարգով: Հանրագիտարանից օգտվելու համար պետք է լավ իմանալ այբուբենը: Ասենք՝ ուզում եք իմանալ, թե Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունն ինչքան բնակիչ ունի: Բացում եք Գ տառով գրույցների շարքը, գտնում Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն գրույցը և անմիջապես իմանում հարցի պատասխանը:



digitised by A.R.A.R.@

Լինում են տարբեր բնույթի հանրագիտարաններ։ Ընդհանուր կամ համապարփակ բնույթի հանրագիտարանները պատմում են ամեն ինչի մասին, ընդգրկում գիտության բոլոր ճյուղերը։ Այսպիսի հանրագիտարաններում ընթերցողը կարող է գտնել պատմության․ արվեստի․ գրականության, բժշկության․ հողագործության, օվկիանոսագիտության և ուրիշ-ուրիշ բնագավառներին վերաբերող նյութեր։ Լինում են նաև ճյուղային հանրագիտարաններ․ օրինակ, բժշկական, պատմական, գրական, թատերական, ճարտարապետական և այլն։ Դրանցից յուրաքանչյուրը հանգամանորեն արտացոլում է տվյալ բնագավառը։ Կան նաև թեմատիկ հանրագիտարաններ։ Այսպես, կա օլիմպիական հանրագիտարան․ որն ընդգրկում է օլիմպիադաներին վերաբերող նյութերը՝ վաղնջական ժամանակներից մինչև մեր օրերը։ Կան նաև մեծ քաղաքներին նվիրված հանրագիտարաններ։ Եղբայրական Մոլդավիայում լույս է տեսնում Խաղողի հանրագիտարան․ որտեղ ամեն ինչ խաղողի մասին է։ Այս կարգի հանրագիտարանները մեծերի համար են։ Մեծերի համար գրված հանրագիտարանային հարցերն ու պատասխանները կոչվում են բառահոդված, իսկ ձեզ համար գրվածները՝ զրույցներ։

«Ինչ է. Ով է»-ն ընդհանուր բնույթի հանրագիտարան է մանուկների համար․ ուր կգտնեք զրույցներ նվիրված մարդկության ողջ պատմությանը՝ սկզբից մինչև մեր օրերը, ընդգրկելով գիտության ու մշակույթի բոլոր բնագավառները։

Այս հանրագիտարանը ռուսերեն կրտսեր տարիքի դպրոցականների համար նախատեսված «Что такое? Кто такой?» հանրագիտարանի հայերեն թարգմանությունն է, որը 1975—78 թվականներին լույս է ընծայել «Պեդագոգիկա» հրատարակչությունը, Մոսկվայում։ Ռուսերենը 3 հատոր է, հայերենը լույս կտեսնի 4 հատորով։ Հայերեն հրատարակությունը զուտ թարգմանություն չէ։ Այստեղ ընդգրկված է բավականին լայնածավալ հայկական նյութ, ինչպես առանձին զրույցների, այնպես էլ արդեն եղած զրույցների լրացումների ձևով և համապատասխան պատկերազարդումով։ Արվել են նաև գիտության, տեխնիկայի և մշակույթի արդի պահանջներից բխող մի շարք փոփոխություններ ու ճշգրտումներ։ Զրույցներ կան Սովետական Հայաստանի, նրա բնաշխարհի․ ծաղկող քաղաքների․ հայ ժողովրդի դարավոր անցյալի, նրա մաքառումների ու հերոսամարտերի, կարևոր իրադարձությունների, գիտության, մշակույթի ու գրականության հայ ականավոր դեմքերի, հայ հեղափոխական գործիչների, մեր հանրապետության խոշոր նվաճումների, աշխարհով մեկ սփռված հայ գաղթավայրերի մասին։

Այսպիսի ընդգրկումների շնորհիվ էլ գիրքը լույս է տեսնում 4 հատորով։ Առաջին հատորը կտպագրվի այս տարի, մնացած հատորները լույս կտեսնեն առաջիկա երկու տարում։

Առաջին հատորն ընդգրկում է Ա, Բ․ Գ․ Դ տառերով 262 զրույց։

«Ինչ է. Ով է»-ն հրատարակում է Հայկական սովետական հանրագիտարանի գլխավոր խմբագրությունը։ Հրատարակողներն արել են ամեն բան․ որ այս գիրքը ձեզ օգտակար լինի և դուր գա։




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հանձնված է տպագրության 6. 1. 1984 թ.։ Ստորագրված է տպագրության 16.3. 1984 թ.։ ՎՖ 12588, Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64052։ Պատ. 34, Գինը՝ 15 կ.։
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 6.1.1984 г. Подписано к печати 16.3.1984 г. Формат 70×100 1/16. ВФ 12588. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64052. Заказ 34. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

digitised by A.R.A.R.@

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.




ԷԴՎԱՐԴ ԽԱՐԱԶՅԱՆ. «ՄԻՋՕՐԵ»

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)
Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

digitised by A.R.A.R.@